# ԱՐՁԱՆ ԱԲՈՎՅԱՆԻՆ

Հ. ՇԻՐԱԶ

Նկ. Հ. ՔԱՅԱԿՅԱՆԻ

Ամեն անգամ, երբ նայում եմ մեր աշխարհին,
Երբ նայում եմ մեր աշխարհին, Մասիս սարին,
Քեզ եմ հիշում, քո կարոտն եմ ես հեկեկում,
Քո կորուստն է սիրտս սգում:

Ամեն անգամ, երբ հայացքս Մասիս սարին՝
Քեզ որոնում ու չի գտնում սուրբ կատարին,
Թվում է, թե այն վարդագույն ամպն ես, որ դեռ
Բարձրանում է լանջերն ի վեր:

Ամեն անգամ, երբ այն պայծառ ամպն է կորչում,
Երբ Արազն է նայում լեռանն ու հառաչում,
Ինձ թվում է, թե սուրբ լեռան անդունդն ու ձոր
Քո մեծ սրտի խոցերն են խոր:

Ու կարոտով ամեն անգամ, բայց ցնծագին
Երբ նայում եմ մեր աշխարհին, Մասիս սարին,
Թվում է, թե Մասիս լեռն է ինձ աշխարհում
Իբրև արձան վեր բարձրանում:






*Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 10

ՀՈԿՏԵՄԲԵՐ

1955 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 27-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ



**Խաչատուր Աբովյանի արձանի մոտ** — Լուսանկար՝ ՆԵՄՐՈՒԹԻ

# ԱՆՄԱՀ ԳՐՈՂԸ

## ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ

Նա իր բովանդակ հանճարը, իր բոցավառ սիրտը, իր փոթորկաշունչ երևակայությունը նվիրեց հայ ժողովրդի հանդեպ ռուս ժողովրդի տածած սիրո փառաբանությանը և նրա ամրացման գաղափարին:

Եվ ոգեշնչված այս զգացմունքներով ու գաղափարներով՝ նա սրտի արյունով ու հոգու կրակով գրեց աշխարհի ամենից սրտառուչ գրքերից մեկը՝ «Վերք Հայաստանին»:

«Վերք Հայաստանին» սովորական առումով գիրք չէ իհարկե. նա վերք է իրոք՝ հայ մեծադժբախտ ժողովրդի դարավոր վերքը՝ ստացած բյուր, արար, ղզլբաշ բարբարոս, արյունարբու հորդաներից և նրանց իշխաններից:

Նա գիրք չէ. նա սիրտ է, տարերային զգացմունքներով զեղուն, անհագին սիրտ՝ Արարատյան նվիրական դաշտի վրա փռված ըմբոստ, զայրալից և վշտագին, Մասիսի բարձունքների վրա վառվող, մխացող սիրտ...

«Վերք Հայաստանին» նաև մեր բողոքի, մեր ըմբոստության, մեր գոյամարտի հերոսապատումն է: Նա մեր դարի շողշողուն էպոսն է, մեր սխրագործությունների դյուցազնավեպը պարսից ոճիրների դեմ:

***

«Վերք Հայաստանին» դա գիրք չէ, միմյանց հետևից շարված տառեր, թուղթ ու մելան, չափված, ձևված, դա՝ հոգուց պոկված, սրտի խորքերից շղթայազերծված մրրկա-արշավ է, հրաբուխ: Ինչպես 1840 թվին դարերով լռած Մասիսը պոռթկաց կրակ ու բոց, և հեղեղեց, և շարժեց հայոց աշխարհը բովանդակ, այնպես էլ նույն թվին՝ Աբովյանի մեծ սիրտը... հեղեղեց և կրակ ու բոց որոտաց, և շարժեց հայ ժողովրդի ներաշխարհը բովանդակ, և կայծակի նման հերքեց ապագայի մութն ու մռայլը, ցույց տվեց փրկության ուղին — հայ ժողովրդի ազատագրման-անկախության ուղին — պահպանումն ու պաշտամունքը մայրենի քաղցր ու մեծասքանչ լեզվի, լուսավորություն, անձնազոհ հայրենասիրություն, սիրալի, հերոսական քաջագործություն:

Զարմանալի՜, անհունորե՜ն զարմանալի հրաշք-երևույթ է «Վերք Հայաստանին»:

***

Խաչ. Աբովյանը մեր նոր միֆն է, մեր նոր Մհերն է նա՝ ազատագրված, շղթայազերծ:

Ժողովրդի իմաստուն բնազդը նրան չի մեռցրել: Քարաշատ Հայաստանը նրա վրա քար չգցեց, որովհետև նա չի մեռել, նա գերեզման կունենա միայն հայ ժողովրդի հետ, իսկ հայ ժողովուրդը, ինչպես ամեն մի ժողովուրդ, հավիտենապես անմահ է. նա երբեք չի մեռնի:

...Բայց ինչու այսքան երկար կանգ առա այս գրքի վրա. երևի որովհետև այս վերջին օրերս շատ եմ ներշնչվում նրանով: Որքա՜ն հրաշալի բան է... որքան սրբազան ոգևորությամբ է լցվում կարդացողի սիրտը. ահա ձեզ մի գրվածք, որ ամբողջովին «հեղինակի արցունքով» է շաղախված. ամբողջովին բանաստեղծություն ու անկեղծ ոգևորության արտահայտություն է:

ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆ

Թա՛ք ըլի դո՛ւ, դո՛ւ իմ պատվական ազգ՝ քո որդու արածը, քո որդու խակ լեզուն սիրես, ընդունիս, ինչպես հերը իր մանուկի կմկմալը. որ աշխարհի հետ չի՛ փոխիլ: Երբ որ կմեծանամ, խորթին լեզվով էլ կխոսամ:

Խ. ԱԲՈՎՅԱՆ

...Հայք ե՞րբ կարեն ռուսաց արածը մոռանալ, քանի որ շունչ ունին:

Խ. ԱԲՈՎՅԱՆ

Բարի հիշատակի արժանավոր Աբովյանցի «Վերք Հայաստանի» անունով գործը—է ազգային բանաստեղծության մի հարազատ գաղափար: ...Ահա այդ աշխատության մեջ մարմին է առել ազգի հոգին, ազգի ներկա վիճակը, ազգի հասկացողությունը:

Մ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Աբովյանը զգայուն հայրենասեր էր, և իբրև հայրենասեր նա իր սրտի բոլոր տանջանքները արտահայտել է իր վեպի մեջ, որ մի տեսակ էպոպեա է պարսկաց խաների ժամանակ հայերի կրած տառապանքների:

ՇԻՐՎԱՆԶԱԴԵ

Շունչդ տուր, հոգիդ, բայց քո Հայրենիք
Մի՛ տուր թշնամյաց, ու անաշխարհիկ
Ընկնիլ սարեսար, լինիլ չարաչար
Ծառա օտարաց, կամ գերի անճար:

Խ. ԱԲՈՎՅԱՆ

# ՄԵԾ ԱԲՈՎՅԱՆԸ

Լ. ԱՍՄԱՐՅԱՆ
(Ֆիլոլոգիական գիտությունների թեկնածու)

1829 թվականի սեպտեմբերին էր։ Մի քանի օր սաստիկ բուք էր անում։ Պարրոտի արշավախումբը ժամանակավորապես հետաձգել էր լեռան վերելքի երկրորդ փորձը։ Բայց ահա վերջացավ հանգիստը։ Սկսվում էր երրորդ ու դժվարին փորձը։ Արշավախմբի մասնակիցների մի մասը հրաժարվեց. որոշ մարդիկ ճանապարհին ուժասպառվեցին։ Դեռ երկրորդ փորձի ժամանակ Պարրոտը մի կերպ համաձայնել էր, որ Էջմիածնում միակ ռուսերեն իմացողը, իր երիտասարդ թարգման Խաչատուր Աբովյանն էլ մասնակցի արշավին։ Բայց գերմանացի պրոֆեսորը մտածում էր. «Դժվար կլինի նրա համար. չէ՞ որ նա չունի ո՛չ սրածայր գավազան, ո՛չ էլ երկաթագամ կոշիկներ»։

Աբովյանի համառությունը հաղթեց։ Եվ ահա նա էլ մյուսների հետ բարձրանում էր վեր։

Օրը հետզհետե ցրտում էր։ Նրանք ստիպված եղան պատսպարվել քարերի արանքում, խարույկ վառել տաքանալու համար։ Ապա նորից առաջացան։ Արշավախմբից միայն վեց հոգի կարողացան հասնել լեռան գագաթին։ Անասելի տառապանքներից հետո, բոլորն էլ հրճվանքի մեջ էին, ուրախությամբ ողջունում էին միմյանց։

Աբովյանն առաջին հայ ալպինիստն էր, որ ոտք դրեց առասպելական լեռան կատարին։ Այդտեղից նա նայեց իր շուրջը։ Ահա Երևանը, Սևանա լիճը, ահա Փոքր Արարատը ընկղմված կապույտ մշուշում։ Այդ հանդիսավոր պահին նա տեսնում էր իր հարազատ աշխարհը, որտեղ ծնվել էր, որտեղ անցել էին իր մանկության, պատանության տարիները։ Գուցե նա մտորում էր Քանաքեռի, Էջմիածնի, Հաղպատի, Թիֆլիսի մասին, որտեղ գրագիտության սերն ստացավ նա։ Ծանր էին այդ տարիները. վարժապետները երեխաներին ավելի շատ ծեծում էին, քան ուսում տալիս։ Իսկ Էջմիածնի վանական կյանքը տանջանք էր ու տանջանք։ Զգայուն պատանին չդիմացավ և փախչելու փորձ արեց։ Իհարկե, ծանր նստեց այդ փախուստը։ Նրան բռնեցին ու ետ բերեցին։ Վանքի ծխոտ կամարները, մութ ու մռայլ պատերը, հոգևորականի սև զգեստը նրան խեղդում էին։ Բայց ուսումնասեր պատանին չէր ընկճվում։

Նա դեռ հիշում էր Ներսիսյան դպրոցը, որն ավարտեց 1824 թվականին, իր սիրելի ուսուցիչ Ալամդարյանին, իր ընկերներին... Վառ էր գիտություն ստանալու ծարավը Աբովյանի սրտում։ Նա նույնիսկ վճռեց Վենետիկ գնալ՝ ուսումը շարունակելու. ռուս-պարսկական պատերազմը խանգարեց։ Գուցե Սևանա կղզում միաբանությո՞ւն հիմնվի։ Աբովյանը որոշեց գնալ և այնտեղ նվիրվել գիտության, ժողովրդի լուսավորության գործին։ Բայց խավարի պաշտպաններին ձեռնտու չէր ժողովրդին լուսավորելը։ Աբովյանի այդ իղձն էլ մնաց անկատար։

Թո՛ղ ինձ այսուհետև ազգս կանչեն. լեզուս բաց ա եղել՝ ի՛մ ընտիր, ազիզ, ի՛մ սրտի սիրեկան ազգ: Թող՝ տրամաբանություն գիտեցողը իրան համքյարի համար գրի, ես, քո կորած, շվարած որդին՝ քեզ համար:

Խ. ԱԲՈՎՅԱՆ

Դրա գրողը մի ճշմարիտ ազգասեր, մի երևելի տաղանդի տեր մարդ է եղել: Պետք է մի հարյուր տարի անց կենա, որ էդպես մի գրող էլի դուրս գա հայերից: Ով որ մոտիկ ծանոթ է մեր ժողովրդի կյանքին, մի զարգացած խելք ու միտք ունի ու սիրող սիրտ, միայն նա կարող է հասկանալ, որ էդ գրքի խոսքերը հեղինակի սրտի արյունովն է գրված:

Ղ. ԱՂԱՅԱՆ

Ես Աբովյանցին աշակերտելու և հետևելու եմ:

Պ. ՊՌՈՇՅԱՆ

Նա երեխայից աչքը բաց արավ՝ տեսավ, թե ինչ անասելի նեղություն էր քաշում մեր ազգը էն ժամանակվա պարսից տերության ձեռքին ու ազգի էս ծանր վիճակը վերք դառավ՝ կպավ սրտին: Մեծացավ, օտար երկիր գնաց ուսում առավ, իր սրտի վերքն էլ հետը մեծացավ ու խորացավ: Ահա էս խոր վերքը, իր աչքի տեսած տանջանքն ու տառապանքը, կռիվն ու քաջությունը հրեղեն լեզվով նա պատմեց մի գրքի մեջ՝ անունը դրեց «Վերք Հայաստանի»: Մեր ազգի սիրած «Վերք Հայաստանին»:

Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

Գնա՛, իմ խեղճ գիրք, գնա՛ մարդամեջ.
Գլուխդ քաշ քցի՛ր, մի նեղանար հեչ:
Ականջդ փակի՛ր, սիրտդ լեն բռնի՛ր,
Ինչ ասեն, խոսին, տա՛ր ու համբերի՛ր:

Խ. ԱԲՈՎՅԱՆ

Եվ ահա կարծես բախտն իր ոտքով էր եկել։ Արդյոք չգիտե՞ր Պարրոտին։ Թույլ նա ընդառաջի երիտասարդին։ Այդպես էլ արեց։ Պարրոտը խոսք տվեց օգնել նրան։

Պրոֆեսորը գնաց Դորպատ, իսկ Աբովյանը էջմիածնում սպասում էր։ Վերջապես ստացվեց Պարրոտի պատասխանը. «Սիրելի բարեկամ, ձեր վիճակը որոշված է. կատարվել է՝ ինչ ցանկանում էիք։ Անհամբեր սպասում եմ ձեր ուրախաբեր դալստյանը»։

1830 թվականի սեպտեմբերին Աբովյանն արդեն Դորպատումն էր։ Նա համալսարանում լսում էր ազատ դասախոսություններ, նրա հետ պարապում էին Պարրոտը և նրա բարեկամ պրոֆեսորները։ Աբովյանը սովորում էր այն բոլորը, ինչ-որ հարկավոր էր ամեն մի լուսավորչի համար։ Նա հմտացավ լեզուների մեջ, շուտով գերմաներեն խոսում էր գերմանացու պես։ Այստեղ նա կատարելագործեց նաև ռուսերենը։ Աբովյանը ծանոթացավ ռուսական և եվրոպական կյանքին, նրանց կուլտուրային, իսկ այդ բոլորը դրական ազդեցություն թողեցին նրա վրա։ Աբովյանը ծանոթ էր ռուս հայտնի գրող Ժուկովսկուն, հանդիպել և խոսել էր նրա հետ։

Հայրենիքից հեռու, Դորպատում Աբովյանն այնուամենայնիվ թախծում էր։ Նա սիրում էր նստել ծառի տակ, մեջքը հենել բնին, նայել աստղալից երկնքին և մտքով թռչել հեռավոր հայրենիք։ Այդպես էր նա հանգստացնում իր սիրտը։

Եվ ամբողջովին նոանդ դարձած, ժողովրդին ծառայելու անսահման ցանկությամբ լցված, նա վերադարձավ հայրենիք։ Դա 1836 թվականին էր։ Անտարբեր և սառը դիմավորեց նրան հոգևորականությունը։

Աբովյանն ուզում էր հայկական դպրոց բանալ, ժողովրդական ուսուցիչներ պատրաստել, և դրա համար էլ ցավալի էր լսել Հովհաննես Կարբեցի կաթողիկոսի մռայլ խոսքերը.

— Դու լավ խմորել կարող ես անմեղների միտքը, բայց նրանց կրթելը քո գործը չէ։

Ի՞նչ կարող էր անել Աբովյանը, մնալ քաղցած, թե՞ մտնել պետական ծառայության։ Նաստիպված ընտրեց երկրորդը։ Գործի անցավ որպես Թիֆլիսի գավառական ուսումնարանի տեսչի պաշտոնակատար։ Այստեղ էր, որ նա ծանոթացավ նոր շրջապատին։ Սկսվեց նրա ջերմ բարեկամությունը Ադրբեջանի մեծ գրող և լուսավորիչ Միրզա Ֆաթալի Ախունդովի և ուրիշների հետ։ Դա ժողովուրդների բարեկամության անկեղծ ու փայլուն օրինակ էր։

Աբովյանն իր ժամանակի լավագույն մանկավարժն էր։ Թիֆլիսում բացած իր մասնավոր դըպրոցի սաների ձեռքից նա վերցրեց կրոնական անհասկանալի գրքերը և նրանց սկսեց դաստիարակել նոր ոգով։ Նրանց հետ միասին գնում էր գետը լողանալու, լինում ազատ բնության գըրկում, աշխատում այգում կամ բանջարանոցում։ Երեխաների համար ամեն ինչ հեշտ ու հասկանալի էր դառնում։ Աբովյանը փորձում էր հեշտացնել նաև ռուսաց լեզվի ուսուցումը։ Հայ երեխաների համար նա գրում է ռուսաց լեզվի քերականությունը։



Աբովյան    Գործ՝ նկ. Է. ԻՍԱԲԵԿՅԱՆԻ

1839 թվականին Աբովյանը վերջնականապես ազատվեց հոգևոր կոչումից, իսկ 1843 թվականին նշանակվեց Երևանի գավառական դպրոցների տեսուչ։

Մի անգամ Աբովյանը այցելեց Աշտարակի Տապուհ վարժապետի դպրոցը։ Այդ դպրոցում էր, որ նա հանդիպեց փոքրիկ Պռոշյանին։ Երեխաները, նրանց թվում և Պռոշյանը, զարմացած էին Աբովյանի վերաբերմունքից։ Ինչպիսի՜ հոգա-

տարությամբ էր նա մոտենում ամեն մեկին, ինչքան ընկերաբար էր վարվում բոլորի հետ։ Հրաժեշտի պահին նա համբուրեց բոլորին և ասաց.

— Երեխա՛յք, ձեր վարժապետն ինձ խոստացել է այսուհետև ծեծը բոլորովին վերացնել, ամառվա շոգերին միայն առավոտյան և երեկոյան հով ժամանակը պարապել, մյուս ժամանակներին ազատ եք, խոստացել է ամեն օր երեկոյան դեմ ձեզ լողալու տանել, օրական երկու ժամ խաղացնել։

Այսպիսին էր մանկավարժ Աբովյանը։

Աբովյանը շատ էր ուզում գրել ժողովրդի համար։ Բայց որքան անտանելի էր, երբ սրտի վիշտը անհնար էր արտահայտել ժողովրդին հասկանալի լեզվով։ Անհնար էր, քանի որ աշխարհաբարը չէր օրինականացված, իսկ գրաբարը հին, մեռած լեզու էր, և ժողովուրդը ոչինչ չէր հասկանում նրանից։

Եվ Աբովյանն սկսեց շրջել ժողովրդի մեջ, լինել հարսանիքներում, ժողովրդական տոներին։ Նա ուզում էր տեսնել, թե ի՞նչն է ամենից շատ մարդկանց դուր գալիս։ Ահա նա քաղաքի մի փոքրիկ հրապարակում է։ Ի՜նչ մեծ բազմություն է հավաքվել այստեղ... Մի կույր աշուղ լարել է սազը և ոգևորված սկսել է մի ադրբեջանական բայաթի։ Շատերը նույնիսկ խոսքերը չեն հասկանում, բայց եղանակն այնքան քաղցր է, այնքան գրավիչ, որ բերանները բաց, զմայլված լսում են։ Երբ երգիչն ընդհատում է, այս ու այն կողմից բացագանչում են.

— Մի բայաթի էլ...

— Չէ, աշուղ Ղարիբի խաղն ասա...

«Մեկ աշըղ էլ դու դառ, ինչ կըլի՝ կըլի, խանչալիդ քարը հո վեր չի ընկնիլը», մտածեց Աբովյանը։

Նա հավաքում էր ժողովրդի իմաստուն առակները, երգերը, ասացվածքները, մշակում դրանք։ Ադրբեջանականի նմանությամբ բայաթիներ գրեց, որ հայ աշխատավորն էլ ազատ ու անկաշկանդ կարողանա երգել դրանք։ Աբովյանը լինում էր քուրդ հովիվների մոտ, հավաքում նրանց սրտառուչ երգերը, գրում նրանց մասին ուսումնասիրություն։

Աբովյանի ամենամեծ ստեղծագործությունը «Վերք Հայաստանի» վեպն էր, որ 1840 թվականին հրաբուխի պես ժայթքեց մեծ գրողի սրտից։ Դա «Հարիր հազարի» համար գրված աշխարհաբար գիրքն էր։ Եվ ինչքա՜ն կրակ, բանաստեղծություն ու կյանք կար այդ հոյակապ վեպում... Սեր, բարեկամություն, հայրենասիրություն, մարդասիրություն, ահա այն ազնիվ թեմաները, որ բերեց Աբովյանն այդ վեպով։

Նա վերակենդանացնում էր անցյալ դարի սկզբի հայ նահապետական գյուղի կյանքը, առաջին անգամ գրում հասարակ գյուղացու զավակ հերոս Աղասու մասին։ Այդտեղ Աբովյանը նկարագրում էր պարսից արյունոտ տիրապետության սարսափները Հայաստանում։ Ժողովուրդը գերի էր։ Գաղթ, ավերածություն, թալան, անհամար աղետներ ու կոտորածներ։

Այսպես էր վիճակը ռուս-պարսկական պատերազմի օրերին։

Մեր ժողովրդի փրկությունը Աբովյանը կապում էր ռուսական թրի հետ և գովերգում էր այդ թուրը։ «Վերք Հայաստանին» հենց ռուս մեծ ժողովրդի, հայ ժողովրդի ազատարարի գովքն է, հայրենասիրական մի հրաշալի գիրք։

«Վերք Հայաստանին» տպագրվեց հեղինակի անհայտացումից տասը տարի հետո։ Նա դարձավ հայ նոր գրականության հիմնաքարը, իսկ Աբովյանը՝ այդ գրականության հիմնադիրը։ Շատ շատերը ոգևորվեցին «Վերք Հայաստանի» վեպով։ Առաջինը Աբովյանի աշակերտներն էին, որ դեռևս անտիպ սկսեցին ձեռքից ձեռք անցկացնել իրենց հանճարեղ ուսուցչի ձեռագիրը։ Նրանք անքուն գիշերներ էին անցկացնում, կարդում ու վերակարդում այդ գիրքը։

Մ. Նալբանդյան, Ստ. Նազարյան, Պ. Պռոշյան, Ղ. Աղայան, Հ. Թումանյան, Ստ. Շահումյան. ահա այն նշանավոր գործիչներից մի քանիսը, որոնք այնքան սիրել ու բարձր են գնահատել «Վերք Հայաստանին»։

Շատերն են կարդացել Աբովյանի «Պարապ վախտի խաղալիքը», «Թուրքի աղջիկը», «Խաղարկության մանկանցը», «Տիգրանի պատմությունը» և ուրիշ շատ գործեր։

Աբովյանը մեծ գրող լուսավորիչ էր, ճանաչված մանկավարժ, իսկական ազգագրագետ, լեզվաբան, պատմաբան, ֆոլկլորիստ, թարգմանիչ, ալպինիստ։

1848 թվականի գարնանը նա ազատվում է աշխատանքից։ Պետք է գործերը հանձներ և գնար Թիֆլիս Ներսիսյան դպրոցում աշխատելու։ Մի օր էլ նա դուրս է գալիս տնից ու չի վերադառնում։ Սկսվում են որոնումները։ Նրա կինը ամեն քայլ սպասում է, թե ուր որ է Աբովյանը կվերադառնա։ Ահա նա լսում է ոտնաձայն կամ դռան թակոց, սրտի թրթիռով տեղից վեր է թռչում և աղջկան հարցնում.

— Տես, հայրդ չի՞։

Բայց հայրը չկար ու չկար։

Աբովյանն անհայտացավ։ Ոմանք ասում էին, թե նրան «սև կարետով» Սիբիր են քշել, մյուսները կարծում էին, թե մի դժբախտ ժամի իր գլուխը մահվան է տվել, երրորդներն էլ ենթադրում էին, թե նրան սպանել են։

Նրան սպանեց խավար և դաժան ժամանակը։ Բայց նա քանի գնաց մեծացավ, անմահացավ։

Այո, Աբովյանն անմահ է հայ ժողովրդի սրտում։ Եվ այդ ժողովուրդը սովետական մեծ երկրի ժողովուրդների հետ միասին, մեծ սիրով է նշում իր մեծ գրողի, դեմոկրատի և լուսավորչի, ժողովուրդների բարեկամության երգչի ծննդյան 150 տարին։

## Խ. ԱԲՈՎՅԱՆԻ ԱՆՎԱՆ ԴՊՐՈՑՆԵՐՈՒՄ



Այս նկարում աշակերտները սովորում են Քանաքեռի միջնակարգ դպրոցում, որը կրում է մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանի պայծառ անունը, այն մարդու անունը, որն իր ամբողջ կյանքը նվիրաբերեց իր ժողովրդի լուսավորության գործին, նրա ազատության գործին: Նա երազեց այնպիսի ապագա, երբ իր երկիրն էլ կծածկվի դպրոցների ցանցով, երբ գեղջուկն անգամ գիրք կկարդա, երբ աշխատավոր ժողովուրդը գիտնականներ կտա Հայրենիքին...

Իրականացել է նրա երազը: Հնամենաց Քանաքեռն այժմ լուսավոր մի կենտրոն է դարձել և ունի ոչ միայն դպրոցներ, կուլտուրայի տուն և բարեկարգ փողոցներ, այլև հիդրոկայան, գործարաններ ու առաջավոր կոլտնտեսություններ:

Այսպիսին է հիմա Քանաքեռը՝ մեր Աբովյանի ծննդավայրը:

### ՄԵՆՔ ՀՊԱՐՏ ԵՆՔ

Մեր և յոթերորդ «ա» դասարանի ջոկատները դեռևս սեպտեմբերի քսանհինգին գնացին Մանկական երկաթուղի և ծաղկեփնջեր դրեցին Խ. Աբովյանի արձանին։ Այնտեղ մեր դասարանի ղեկավար վաստակավոր ուսուցչուհի Արփիկ Տանոյանը պատմեց մեծ գրողի կյանքի և գործունեության մասին, իսկ մենք արտասանեցինք ոտանավորներ։ Երգեր էլ երգեցինք։ Հոկտեմբերի սկզբին դպրոցի դահլիճում նոր երեկույթ եղավ, իսկ հետո դպրոցի նախկին շրջանավարտների հանդես տեղի ունեցավ։ Բացի այդ, մենք հարուստ ալբոմներ կազմեցինք։ Պատի թերթ էլ լույս ընծայեցինք, որտեղ կային աշակերտների հորինած ոտանավորներ նվիրված Աբովյանին։ Ջոկատներից շատերն էլ այցելեցին Քանաքեռի Խ. Աբովյանի տուն-թանգարանը։

Այս փառավոր տոնին մենք խոսք ենք տալիս, որ գերազանց գնահատականներով կփոխադրվենք հաջորդ դասարան։

Ջ. ԱՎԱԳՅԱՆ
(Երևանի Խ. Աբովյանի անվ. դպրոցի 6-րդ «ա» դասարան)

### ՄԵՐ ԳՈՐԾԵՐԸ

Մենք ջոկատով էքսկուրսիա կազմակերպեցինք դեպի Քանաքեռ՝ Խ. Աբովյանի տուն-թանգարանը։

Այնտեղ մենք դիտեցինք մեծ գրողի և լուսավորչի կյանքին վերաբերող հարուստ նյութերն ու էքսպոնատները։

Երբ վերադարձանք, պատրաստեցինք տուն-թանգարանի մակետը, կազմեցինք ալբոմ, որը պատկերում է մեծ գրողի կյանքն ու գործունեությունը։ Հրատարակել ենք նաև պատի թերթի հատուկ համար՝ նվիրված հոբելյանին։

Պիոներական սենյակում առանձնացրել ենք անկյուն, որտեղ փակցրել ենք նկարներ, ցուցադրել Աբովյանի ստեղծագործությունները։

Վերջերս մենք կազմակերպեցինք հետիոտն արշավ։ Ճանապարհին երգում էինք Խ. Աբովյանի մասին երգը, որը սովորեցրել էր երգի խմբակի ղեկավարը։ Դադարի ժամանակ պիոներները արտասանեցին Աբովյանի ոտանավորներից։ Մարիամիկը շատ լավ արտասանեց «Ճունչդ տուր, հոգիդ» հատվածը։

Երբ տեղ հասանք, ջոկատի խորհրդի նախագահ Օֆելյա Պետրոսյանը կարդաց մի քանի գործեր Աբովյանի «Պարապ վախտի խաղալիքը» գրքից։

Լ. ՎԱՐԴԱՆՅԱՆ
(Լենինականի Խ. Աբովյանի անվան դպրոցի 3-րդ ջոկատի պիոներուհի)

# ՏՈՒՆ-ԹԱՆԳԱՐԱՆԸ

Ընդարձակ բակի աջ կողմում գետնից ոչ այնքան բարձր մի հարկանի համեստ բնակարան կա: Պատշգամբի կողքին դրված է գրանիտյա քարե հուշատախտակ, որի հղկված մակերեսի վրա փորագրված է. «Այս տանն է ծնվել հայ նոր գրականության հիմնադիր լուսավորիչ-դեմոկրատ Խաչատուր Աբովյանը»: Պատվանդանի վրա գրողի քարակերտ կիսանդրին է: Տան սենյակները վերականգնված են այնպես, ինչպես եղել են Աբովյանի կենդանության օրով: Պահպանվում են հին կավե ամանները, խնոցին, կարասը, օրորոցը և հասարակ սնդուկը:

Բակում կառուցված է երկհարկանի գեղեցիկ մի շենք: Այնտեղ Աբովյանին վերաբերող ամեն մի իրը, ամեն մի փաստաթուղթը դասավորված է ժամանակագրական կարգով:

Առաջին բաժինը վերաբերում է Աբովյանի մանկության տարիներին: Մի մեծ նկար պատկերում է Աբովյանի ժամանակվա Քանաքեռը իր կավաշեն տներով և ծուռ ու մուռ փողոցներով: Մի այլ նկար պատկերում է հին Երևանի նեղ ու քարակերտ փողոցներից մեկը: Պատերից մեկի վրա կախված է Աբովյանի ուղևորությունների քարտեզը: Ահա և Թիֆլիսի Ներսիսյան դպրոցի լուսանկարը: Այդտեղ Աբովյանը սովորել է Հարություն Ալամդարյանի մոտ:

«Ռուսաց քաջ հոգին էր, որ մեզ ազատեց...». մեծ հայրենասերի այս խոսքով է սկսվում այն բաժինը, որը նվիրված է Արևելյան Հայաստանի միացմանը Ռուսաստանին:

Այստեղ ցուցադրված է մի նկար, որը պատկերում է Սարդարի պալատը Հրազդանի ափին: Այս բաժնում հարուստ նյութեր կան այն մասին, թե ինչպես Աբովյանը 1829 թվականին բարձրացել է Արարատի գագաթը:

«Հայ մեծ լուսավորիչը և ռուսական կուլտուրան» բաժնում նույնպես հետաքրքիր էքսպոնատներ կան: Մի մեծ յուղաներկ կտավի վրա պատկերված՝ է Աբովյանը ռուս մեծ բանաստեղծ Ժուկովսկու հետ:

Այստեղ են նաև ռուս մի շարք հայտնի գրողների նկարներ: Շատ գրողների հետ Աբովյանը անձամբ ծանոթ է եղել:

Մի ընդարձակ դահլիճ հատկացված է մեծանուն գրողի գրական գործունեությանը: Հազվագյուտ էքսպոնատների թվին է պատկանում Աբովյանի «Վերք Հայաստանի» վեպի ձեռագիրը և 1858 թվականի առաջին տպագրության օրինակը: Այստեղ է գտնվում «Նախաշավիղը»: Դա միակ գիրքն է, որ տպագրված է Աբովյանի կենդանության ժամանակ: Ուշադրության արժանի է մի մեծ յուղաներկ գործ, որը պատկերում է Աբովյանին մի խումբ աշակերտների հետ Աշտարակում: Այդ աշակերտների մեջ է նաև պատանի Պերճ Պռոշյանը:

Անչափ հետաքրքիր է մի նկար, որը պատկերում է բարեկենդանի քեֆը Քանաքեռում:

«Վերք Հայաստանի» անմահ վեպին նվիրված բաժինը շատ հարուստ է նկարներով: Ո՞ր նկարչին ասես չի հուզել այդ հրաշալի գիրքը: Այստեղ ցուցադրված են գունավոր նկարների մի ամբողջ շարք. «Ալի Ղարաքիլիսայի դեպքերը», «Աղասին ազատում է հայ գերիներին», «Աղասու հանդիպումը Հասան խանի հետ» և այլն:

Էքսպոնատների մի զգալի մասը հատկացված է ժողովուրդների եղբայրության և բարեկամության գաղափարին: Մի մեծ կտավի վրա պատկերված է Աբովյանի մտերմությունը Ադրբեջանի լավագույն զավակների՝ Միրզա Ֆաթալի Ախունդովի, Միրզա Շաֆու հետ: Մի այլ նկարում Աբովյանը զրուցում է քուրդ հովիվների հետ:

«Աբովյանը մեր օրերին» հարուստ բաժնում անգնահատելի նյութեր կան, որ գրել են Հովհաննես Թումանյանը, Ավետիք Իսահակյանը, Դերենիկ Դեմիրճյանը, Պավլո Տիչինան և ուրիշները:

Հ. ՂԱԶԱՐՅԱՆ



Խ. ԱԲՈՎՅԱՆԻ տունը Քանաքեռում: Գործ՝ նկարիչ Գ. ԲԱՇԻՆՋԱՂՅԱՆԻ

# ԹԱՔՆԱՂԲՅՈՒՐ

Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Մի քանի տարի առաջ ես աշխատում էի մի լեռնային գյուղի նորաբաց միջնակարգ դպրոցում։ Այդ գյուղը կոչվում էր Թաքնաղբյուր, մի անուն, որ գալիս էր հնից, և տեղացիներից ոչ մեկը չէր կարողանում բացատրել։ Գյուղից մի քանի կիլոմետր հեռու, անտառապատ սարալանջին մի հին գյուղատեղ կար, որին նույնպես Թաքնաղբյուր էին կոչում։ Հին գյուղատեղի ավերակներում ոչ ոք չէր ապրում, միայն հովիվներն այնտեղ քարերով շրջափակված բացատներ էին սարքել, որոնց մեջ երեկոյան դեմ նստեցնում էին ոչխարներին։

Թե՛ հին և թե նոր Թաքնաղբյուրների միջով անցնում էր մի լեռնային փրփրալի գետակ, որը կյանք էր տալիս շրջապատին, ջրում սարալանջերն ու անտառից խլած այն հողակտորները, որտեղ գյուղի կոլտնտեսությունը ցորեն ու կերաբույսեր էր ցանում։ Բայց ոչ հին և ոչ էլ նոր Թաքնաղբյուրում աղբյուրներ չկային. հենց դրա համար էլ ինձ զարմանալի էր թվում գյուղի անունը։ Ես հարցուփորձ էի անում գյուղացիներին, բայց ապարդյուն։ Նույնիսկ Օսեփ բիձան, որ հասակավորների մեջ «աշխարհ տեսած» մարդու համբավ ուներ, որևէ սպառիչ պատասխան չկարողացավ տալ իմ հարցին...



Պատգարակն սկսեց դանդաղ ցած սահել:

Մի քանի տարի աշխատեցի Թաքնաղբյուրում, մտերմացա այդ գյուղի աշնիվ ու աշխատասեր կոլտնտեսականների հետ, նրանց համար դարձա «մեր Հակոբ»։ Այնպես կապվեցի աշակերտներիս, որ ամառային արձակուրդների ժամանակ էլ էի նրանց հետ լինում։ Նրանց գլուխն անցած շրջում էի անտառներում ու սարերում, զանազան հանքատեսակներ, ծաղիկներ ու միջատներ հավաքում դպրոցի լաբորատորիաների համար։

Ամռան մի օր մեր խմբակը հերթական արշավի ելավ։ Այս անգամ ծրագիրը հատուկ հետաքրքրություն էր ներկայացնում։ Մենք որոշել էինք...

Բայց ես մոռացա ասել, որ հին Թաքնաղբյուրի մոտ, լեռնային գետի անդնդախոր ձորի քարաժայռերում քարանձավներ կային։ Դրանցից մի քանիսին կարելի էր հասնել ժայռերը մագլցելով։ Այդպիսիներն արդեն ծանոթ էին մեզ։ Դրանցից մեկի մեջ մենք վայրի աղավնիների բներ էինք գտել, իսկ մյուսները ամայի ու դատարկ էին։

Քարանձավներից միայն մեկն էր, որ անմատչելի էր։ Ջրի հակառակ ափից երևում էր քարանձավի մութ բացվածքը՝ շրջապատված ժայռի ճեղքերի մեջ բուսած թփուտներով։ Վերևից բացվածքի վրա մի մռայլ ժայռ էր կախված, իսկ ներքևից՝ հիսուն մետրի չափ ողորկ բնական պատ էր, այս ու այնտեղ փոքրիկ ճեղքերով, որոնց մեջ նույնպես վտիտ թփեր էին աճել։ Ահա հենց այդ քարանձավն էր, որ պիտի ուսումնասիրեինք։

Դեռ մի քանի օր առաջ արշավի ծրագիրը քննության էր դրվել պատանի ճանապարհորդների խմբակում։ Երեխաներից բացի ժողովին մասնակցում էին ուսուցիչներ, տրակտորիստներ, կոլտնտեսականներ։

Քարանձավին հասնելու մասին շատ առաջարկներ եղան. դրանցից մի քանիսն այնքան ֆանտաստիկ էին, որ քննության էլ չդրվեցին։ Մի քանիսը խելացի էին թվում, սակայն դժվար իրագործելի։ Վերջապես կանգ առանք մի առաջարկի վրա, որ կարծես թե ամենից հասարակն էր, բայց և միաժամանակ ամենից գործնականը։

— Դրուստ ուզում եք մտնեք էդ զաղե՞ն,— հարցրեց Օսեփ բիձան։

—Ուզում ենք,— պատասխանեց նրա թոռը՝ Կարենը։

— Դու կաց, առաջ մի՛ ընկնի,— սաստեց Օսեփ բիձան ու դեպի ինձ դարձավ։

Ես գլխով հաստատական նշան արի։

— Դե՜, լավը ճախարակն ա...

Օսեփ բիձան բացատրեց իր պլանը։ Մեքենատրակտորային կայանի մեխանիկը խոստացավ ձորի գլխին մի ճախարակ պատրաստել, կոլտնտեսության պահեստապետն էլ ասաց, որ պահեստում հարյուր մետրանոց երկաթե ճոպան ունի, իսկ տղաները որոշեցին ամուր տախտակներից մի քանի հարմար պատգարակ սարքել։

Մի քանի օր հետո հուսալի հարմարանքն արդեն պատրաստ էր։



Երբ մեր ջոկատը տեղ հասավ, ձորի գլխին արդեն մեծ բազմություն էր հավաքվել։

Որոշված էր, որ պատանի ճանապարհորդներից քարանձավի ուսումնասիրությանը մասնակցելու էին միայն երեքը. Օսեփ բիձայի թոռը՝ Կարենը, իններորդ դասարանցի Լուսիկը և Արտավազդը, մի ճարպիկ ու բանիմաց տղա, որ դպրոցում սովորելուց բացի աշխատում էր նաև կոլտնտեսության ակումբում որպես կինոմեխանիկի օգնական։

Ես ու Կարենն զգուշությամբ մոտեցանք ժայռի պռնկին ու մտանք հսկայական գերանի ծայրից կախված պատգարակը։ Պատգարակն սկսեց դանդաղ ցած սահել։ Մի քանի րոպեից հետո մենք արդեն քարանձավի անցքի մոտ էինք։

— Կանգ առ,— ճչացինք երկուսով՝ ինչպես պայմանավորվել էինք։

Պատգարակն իսկույն կանգ առավ։ Մենք երկաթե երկար կեռերը գցեցինք քարանձավի մուտքի մոտ բուսած թփուտներին և սկսեցինք զգուշությամբ ձգել։ Մի քանի րոպե անց պատգարակն արդեն հպվել էր ժայռին և թոկերով ամուր կապվել թփուտներից։ Մենք դուրս եկանք պատգարակից, անձավ մտանք և թոկերը քանդեցինք. պատգարակը վեր սլացավ Լուսիկին և Արտավազդին բերելու։

Լուսիկն ու Արտավազդն էլ նույն ճանապարհով քարանձավ փոխադրվեցին։ Մենք վառեցինք էլեկտրական լապտերները և զգուշությամբ, ոտքներիս տակն ստուգելով սկսեցինք քայլել դեպի քարանձավի խորքը։

Քարանձավում մութ էր ու խոնավ։ Ինչ-որ տեղից զով քամի էր փչում, և լսվում էր մի մեղմ խշշոց։ Գնալով քարանձավը լայնանում էր։ Շուտով այն դարձավ գրանիտե ողորկ հատակով մի սրահ, որի անկյունները կորել էին խավարի մեջ։ Քանի առաջ էինք շարժվում, օդն այնքան խոնավանում էր, առաստաղից ջրի մանրիկ կաթիլներ էին թափվում, մեզ շրջապատում էր թեթև գոլորշու մի տարօրինակ ամպ. ծծումբի թույլ հոտ էր



... տառերի նման նկատեցի:

զգացվում։ Վերջապես հասանք սրահի ծայրին և քարացած կանգ առանք։

Սրահի անկյունում, մի մեծ տարածության վրա, գրանիտե հատակը խողովակաձև տաշված էր։ Մեր լապտերների լույսի տակ պլպլում էր արագահոս ջրի շիթը, որից թեթև ծծմբահոտ գոլորշի էր բարձրանում։ Ջուրը գրեթե անաղմուկ դուրս էր գալիս դիմացի գրանիտե պատի միջից, անցնում էր մետրաչափ բաց տարածությունը և նորից անհայտանում գրանիտե հատակի տակ։ Բաց տարածության վրա առվակի քարե ափերը կարմիր էին ներկված։

— Երկաթի օքսիդ է,— ասաց Լուսիկը։

— Այո,— հաստատեցի ես ու ձեռքս ջրի մեջ մտցրի։

Ջուրը հաճելի կերպով տաք էր։

Մինչ մենք ջրին էինք նայում, կողքից լսեցինք Արտավազդի ձայնը.

— Ընկե՛ր Հակոբյան, մի այս կողմը նայեցեք։

Շրջվեցինք։ Արտավազդի լապտերի լույսի տակ երևում էր մի ավազան։ Ավազանը փորված էր քարե հատակի մեջ։ Նա այնքան ողորկ էր, որ

կարծես թե կարմրագույն հախճապակուց լիներ պատրաստած. իսկ ներքևի կողմը սևին էր տալիս մի փոքրիկ կլոր անցք։ Ավազանի եզրին քարե աստիճաններ կային։ Երբ մենք լապտերների լույսերն ուղղեցինք աստիճաններին, ես ամենավերին աստիճանի վրա տառերի հետքեր նկատեցի։

— Լուսավորեցե՛ք,— կարգադրեցի աշակերտներիս ու չոքեցի։

Մի փոքր անց առվակից վերցրած ջրով ես արդեն լվացել էի արձանագրությունը և բարձրաձայն կարդում էի՝ խորհրդավոր դիպվածից սսկված աշակերտներիս համար։

«Ով որ լողանա այս ավազանում, կապաքինվի ցավից։ Շինեց ավազանը անարժան Բարսեղն իր վաղամեռիկ դստեր՝ Լոջիկի հիշատակին հայոց թվագրության Պ Հ Ա տարում[1]։

Մենք ձորափի վերադարձանք նույն ճանապարհով. բայց մեզ համար մի բան պարզ էր արդեն, որ ոչ Բարսեղը, ոչ էլ այն մարդիկ, որ դարեր առաջ լողացել էին նրա պատրաստած ավազանում, ճախարակով չէին իջել քարանձավ։ Ակնհայտ էր, որ քարանձավը մի այլ՝ ավելի մատչելի ճանապարհ է ունեցել։ Մենք հաստատ որոշեցինք որոնել ու գտնել այդ ճանապարհը, որ հավանաբար գետնի տակով պիտի անցներ, իսկ ծայրը պետք է լիներ ձորափին փռված անտառի մեջ, այնտեղ, ուր հին Թաքնաղբյուրի ավերակներն էին։

Բայց մինչ այս, ես մեր գտածի մասին գրեցի շրջանային թերթում։ Շուտով Երևանից հատուկ արշավախումբ եկավ, որը մանրամասն ուսումնասիրելով քարանձավը, ոչ միայն մատչելի ճանապարհը գտավ, այլև հաստատեց, որ քարանձավի ջուրը հրաշալի բուժիչ հատկություններ ունի։

Այժմ հին Թաքնաղբյուրի տեղում բարձրանում են լեռնային սանատորիայի հրաշալի շենքերը, իսկ երիտասարդ էքսկուրսավարները նոր ժամանած հիվանդներին նորակառույց թունելով դեպի քարանձավի խորքը տանելով, ցույց են տալիս դարեր առաջ ապրած տաղանդավոր վարպետի աշխատանքը՝ Թաքնաղբյուրի առաջին սանատորիայի առաջին ավազանը։

[1] 1422 թվականին։

# ԱՅՍ ԳԻՏՈՒՆԸ

Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

Նկ. Ռ. ՏԵՐ-ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ

Այս գիտունը քուն թե արթուն
Պառկած անվերջ գիրք է կարդում։
Կարդում է բերք և ամսագիր,
Կարդում տարված, շատ ուշադիր,
Թե աշխարհում ինչպես ապրել,
Ինչպես կյանքը նվեր բերել



Հայրենիքին, ընկերներին,
Հարգել մեծին, սիրել փոքրին։
Ծնողների խոսքը լսել,
Նրանց հոգսի բեռը կիսել...

Կարդում է նա... Մայրը հոգնած
Նրան ձայն է տալիս կամաց.
— Արմենա՛կ ջան, քիչ փայտ կոտրիր։
— Գիրք եմ կարդում, մի՛ խանգարիր...
Հայրն ասում է՝— Հացի գնա։
— Ես ժամանակ չունեմ հիմա։
Պառավ տատը ուզում է ջուր...
— Ես կարդում եմ, մի՛ ասա զուր...
Այսպես պառկած քուն թե արթուն
Նա անընդհատ գիրք է կարդում...

Մի հարցնող լինի.— էլ ո՞ւր
Այդքան գիրք ես կարդում իզուր,
Երբ ոչինչ էլ չես կատարում,
Ինչ գրված է այդ գրքերում։

# ԱՌԱՋՆՈՐԴԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՃԱՌԸ

*Է. ՇԱՀՆԱԶԱՐՅԱՆ*

Երիտասարդ Սովետական ռեսպուբլիկայի գոյության առաջին տարիներն էին, 1920 թվականի հոկտեմբերը: Քաղաքացիական պատերազմը դեռ չէր վերջացել: Բանվորներն ու գյուղացիները զենքը ձեռքերին պաշտպանում էին Սոցիալիստական ռևոլյուցիայի նվաճումները: Այդ ծանր ժամանակ Մոսկվայում բացվեց Կոմերիտմիության երրորդ համագումարը: Այդ համագումարը հայտնի է նրանով, որ այդտեղ հանդես եկավ Վ. Ի. Լենինը «Երիտասարդական Միությունների խնդիրների մասին» իր պատմական ճառով: Դրա մեջ պարզ ու լրիվ որոշված էին երիտասարդության կյանքի ու գործունեության հիմնական խնդիրները շատ տասնամյակների համար:

Համագումարի շատ դելեգատներ սպասում էին, որ Վ. Ի. Լենինը կխոսի հացի մասին, որն անհրաժեշտ էր սովահար քաղաքներին... սպիտակ լեհերի մասին, որոնց հարկավոր էր դուրս շպրտել Սովետական երկրի սահմաններից: Ամբողջ մեր երկիրը այդ օրերին ապրում էր այդ լուրջ հարցերով: Դրա համար էլ համագումարի դելեգատներին թվում էր, թե Երիտասարդական Միության խնդիրը պարզ է՝ ջարդուփշուր անել բուրժուաներին: Ջախջախել էին Կրասնովին, Կոլչակին, Դենիկինին. էլ ո՞ւմ պիտի ջարդեին: Բայց հանճարեղ Լենինը նայում էր հեռավոր ապագային: Նա տեսնում էր, որ հին կարգերի տապալման խնդիրը կատարված է: Կարելի է սկսել կոմունիստական հասարակարգի կառուցումը: Սակայն դրա համար պետք է աղքատ, քայքայված Ռուսաստանը վերածել հարուստ երկրի, տնտեսությունը վերակառուցել ամենաառաջավոր տեխնիկայի հիման վրա: Իսկ այդ խնդիրը կարող է իրականացնել միայն գիտելիքներին տիրապետող մարդը: Առանց դրան կոմունիզմ չես կառուցի: Ուրիշ խոսքով՝ կոմունիստական հասարակարգը հաջողությամբ կառուցելու համար հարկավոր էին միլիոնավոր բարձրագույն կրթություն ունեցող մարդիկ, գիտության տարբեր ճյուղերի միլիոնավոր մասնագետներ: Ահա թե ինչու Լենինի ճառում գլխավոր տեղը գրավում էին երիտասարդության ուսման ու կրթության հարցերը:

Սովորել, սովորել, սովորել, այս է խնդիրը, որովհետև առանց գիտելիքների նոր հասարակարգ չես կառուցի:

Մեծ առաջնորդի և ուսուցչի այդ կոչը դարձավ Կոմերիտմիության հետագա ամբողջ գործունեության դրոշը, սովետական երիտասարդության ուղեցույց աստղը:

Միլիոնավոր տղաներ ու աղջիկներ սկսեցին ոգևորությամբ սովորել: Նրանցով լցվեցին բանֆակների, տեխնիկումների, բուհերի լսարանները: Չխնայելով ուժերը, նրանք պայքարի ելան դարավոր հետամնացության դեմ: Հարյուր հազարավոր երիտասարդներ սովորում էին առանց արտադրությունից կտրվելու:

Լենինի կոչով ծավալված այդ արշավը դեպի գիտություն, հսկայական դեր խաղաց սոցիալիստական շինարարության համար կադրեր պատրաստելու գործում: Կատարվեց Վլադիմիր Իլյիչի մեծ պատվիրանը:

Սովետական երիտասարդության շարքերից առաջ քաշվեցին տասնյակ հազարավոր պարտիական ու պետական գործիչներ, տնտեսության մասնագետներ:

Մեր Հայրենիքի երիտասարդ սերունդն այժմ էլ սրբությամբ կատարում է Մեծ Լենինի այդ պատվիրանը, համառորեն տիրապետում է այն գիտություններին, որոնք մշակել է մարդկությունը:

Մեծ առաջնորդը նախազգուշացնում էր գոռոզանալուց, դաստիարակում էր առաջ ընթանալու մշտական ձգտում: Այն մարդիկ, ասում էր Լենինը, որոնք մտածում են, թե իրենք ամեն ինչի հասել են, ամեն ինչ յուրացրել, որ իրենց համար էլ ոչինչ չկա սովորելու, կոմունիստներ չեն դառնա:

Կոմունիստ դառնալու համար, անհրաժեշտ է պատանի հասակից իրեն մեջ դաստիարակել համառություն, գիտական կարգապահություն, այսպես էր սովորեցնում Լենինը:

Վլադիմիր Իլյիչը երիտասարդությանը սովորեցնում էր չսահմանափակվել կոմունիստական գրքույկների ընթերցումով, չփակվել դպրոցների պատերի հետևը, քանի որ առանց աշխատանքի, առանց պայքարի, գրքերի տված գիտությունը ոչինչ չարժե:

Նա կոմերիտականներին կոչ էր անում ուսման ամեն մի քայլը կապակցել կոմունիզմ կառուցող բանվորների ու գյուղացիների ընդհանուր գործին մասնակցելով: Մեր երկրի երիտասարդ սերնդի

կյանքի ամբողջ խնդիրը Իլյիչը համարում էր կոմունիստական հասարակարգի կառուցումը:

Սրբությամբ հաստատելով սիրելի առաջնորդի և ուսուցչի այդ պատվիրանը մեր երկրի երիտասարդ սերունդը միշտ էլ խիզախորեն աշխատել է սոցիալիստական շինարարության բոլոր ճյուղերում:



Վ. Ի. ԼԵՆԻՆԸ Կոմերիտմիության երրորդ համագումարի դելեգատների շրջանում:

*Գործ՝ Գ. ԲԵԼՈՈՒՍՈՎԻ*

Սովետական երիտասարդության համար սովորություն է դարձել գնալ շինարարության ամենածանր աշխատամասերը: Ջերմորեն արձագանքեցին կոմերիտականները Կոմունիստական պարտիայի կոչին՝ խամ ու խոպան հողերը յուրացնելու գործում: Ավելի քան 200 հազար երիտասարդ հայրենասերներ գնացին Ղազախստանի, Սիբիրի, Մերձուրալյան տափաստանները: Նրանք հաղթահարելով դժվարությունները, համառորեն պայքարում են Հայրենիքի առաջադրանքները կատարելու համար:

Սովետական երիտասարդության աշխատանքային սխրագործությունների շատ օրինակներ կարելի է բերել: Դրանք բոլորն էլ ցույց են տալիս, որ մեր երկրի երիտասարդները շատ լավ են հիշում Իլյիչի պատգամը՝ ակտիվ մասնակցություն ունենալ կոմունիզմի կառուցման գործում, մեր ժողովրդի ամենօրյա աշխատանքում:

Երեք տասնամյակ է անցել այն ժամանակվանից, երբ Կոմերիտմիության երրորդ համագումարում Լենինը արտասանեց իր ճառը: Սակայն այդ ճառում արտահայտած հանճարեղ մտքերը, երբեք չեն մարի: Լենինյան իմաստուն խոսքերը սովետական միլիոնավոր երիտասարդներին այժմ էլ ցույց են տալիս իրենց կոչումն ու խնդիրները:

## ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆԸ

*Ա. ՊՈՂՈՍՅԱՆ*

Տասնչորս գարուն արդեն փայլել,
Եվ գարունները այդ բերել եմ ինձ հետ,
Մեր սեգ լեռների հովերն եմ բերել
Ու ծաղիկների բույրը կենսավետ:
Մանկուց բռնել եմ դպրոցի ճամփան
Եվ ինձ հպարտ եմ զգացել հավետ,
Բերել եմ ինձ հետ հուրը մանկության
Պիոներական իմ վզկապի հետ:

Բերել եմ ինձ հետ ուժերն իմ համեստ
Ու ձգտումներն իմ ազնիվ ու շիտակ,
Բոլորը բերել՝ նվիրում եմ քեզ,
Կանգնում Լենինյան քո դրոշի տակ,
Դարձիր իմ ճամփին ընկեր, ուղեկից,
Եվ ինձ անշեղ տար դեպի ապագան.
Աչքիս լույսի պես կսիրեմ քեզ միշտ...
Լենինյան եմ ես, կոմերիտական:

# „ՊԱՐՏԻԶԱՆԱԿԱՆ ԿԱՅԾ"



Դ. Դյաչենկո



Վ. Մորզաչենկո



Պ. Գրեչանի

Հրդեհների հրացոլքը դողդողում էր Բուգի սառը ջրերում։ Այրվում էին մերձափնյա գյուղերը։ Ռումբերից փլվում էին Նիկոլաևի մարզի Պերվոմայսկ քաղաքի շենքերը։ Մեր զորքերը նահանջում էին։ Կրիմկա մեծ գյուղն էին մտնում գերմանական ֆաշիստները...

Նրանք գյուղական ակումբը վերածեցին ոստիկանատան, գյուղսովետի շենքը դարձավ ոստիկանապետ Անուշկոփ բնակարանը։

***

Լույսը հազիվ էր առկայծում սառցակալած լուսամուտի միջով։ Պարֆենտի Գրեչանիի մոտ խորհրդակցություն էր։ Տղաները սեղանին օդուշշեր էին դրել, իսկ Կրավեցը մեկ-մեկ զարկում էր կիթառի լարերին և վշտոտ հնչյուններ հանում։ Պարֆենտին ոգևորված ասում էր.

— Կայծակից բոց կբռնկի։

Ուրքի ելան։ Միխայիլը դարձյալ նվագում էր։ Լսվում էր Պարֆենտիի ձայնը.

— Մեր կազմակերպությունը պետք է կոչել «Պարտիզանական կայծ»...

Դմիտրի Պոպիկը նշանակվեց շտաբի պետ։ Սկսեց աճել, մեծանալ անվախ կոմերիտականների կազմակերպությունը։ Գալիս էին նորանոր տղաներ ու աղջիկներ, որոնց համար թանկ էր Հայրենիքը։ Հարևան Կատերինկա գյուղում Պարֆենտիի աջ ձեռքն էր Միշա Կլիմենյուկը, Կումարիում՝ Վոլոդյա Վայսմանը։ «Պարտիզանական կայծն» իր անդամներն ուներ Կամեննայա Բալկայում, Կամեննի Մոստում, Իվանովկայում, Վրադիևկայում, Նովո-Անդրեևկայում, Ստեպովկայում և շրջանի մյուս գյուղերում։ Կայծից բոց էր բռնկել։

***

Դմիտրիի մոտ տղաները երկար մնացին։ Նրանք նստել էին ընդունիչի մոտ և սպասում էին։ Հանկարծ լսվեց դիկտորի ձայնը.

— Խոսում է Մոսկվան...

Հաջորդ օրը Պոլյան մերենագրեց կոչը. «Մի հավատացեք օկուպանտներին։ Մոսկվան ողջ է։ Մոսկվան անպարտելի է»։

Անտառից, Բուգի ափերի մոտ տղաներն սկսեցին զենք հավաքել։

Վոլոդյա Վայսմանը մի օր գնում էր դաշտով։ Որտեղից որտեղ նրա առջև բուսնեց ոստիկանը։

— Ի՞նչ ես անում այստեղ։

— Զբոսնում եմ քնելուց առաջ...

Ոստիկանը ցանկացավ խուզարկել Վոլոդյային։ Վոլոդյան ուժգին խփեց ոստիկանի բերանին։ Ոստիկանն ընկավ և ձեռքը տարավ դեպի ատրճանակը, բայց չկարողացավ հանել։ Վոլոդյայի պիրկ մատները սեղմում էին նրա կոկորդը... Վերցնելով ոստիկանի ատրճանակը՝ Վոլոդյան գնաց իրենց տուն։

Գտնված զենքերը թաքցնում էին Վոլոշին եղբայրների մոտ։ Գրեչանին, Կրավեցը, Բելոուսը գտել էին հաստոցավոր գնդացիր։ Անտառից աղջիկները, պարկերի մեջ պահած, հրացաններ, նռնակներ, գնդակներ էին բերել։

«Պարտիզանական կայծի» անդամները պայթեցնում էին կամուրջները, նավթի ցիստեռնները, ոչնչացնում էին թշնամու զինվորներ տեղափոխող գնացքները, վնասում տրակտորները, կոմբայնները, հրդեհում պահեստները...

— Գոտեպնդվեցեք, մենք մենակ չենք, մեզ հետ են պարտիական ընդհատակը, պարտիզանները,— մի անգամ ասաց դպրոցի դիրեկտոր Վլադիմիր Մորգունենկոն...

Դեղնած տերևները ծածկել էին անտառային արահետը, որով առաջ էին գնում Դաշան ու Վոլոդյան։ Նրանք պետք է գտնեին պարտիզաններին։ Լավեց ինքնաթիռի հռնդյուն։ Գերմանական ինքնաթիռը պտույտ գործեց անտառի վրա։ Դաշան ու Վոլոդյան կրակեցին։ Երբ ինքնաթիռը կրկին երևաց, նրա պոչից ձգվում էր ծխի երիզը։

Այդ օրը կապ հաստատվեց պարտիզանների հետ։ Չնայած, որ գյուղից դուրս գալը խստիվ արգելվում էր, Պարֆենտին լինում էր և՛ Կամեննայա Բալկայում, և՛ Կումարիում, և՛ Նովո-Անդրեևկայում։ Ամեն տեղ նա թռուցիկներ էր տանում։

«Պարտիզանական կայծ» կազմակերպության մեջ առանձնապես աչքի էր ընկնում կոմերիտուհի Դարյա Դյաչենկոյի խումբը։ Դաշան կապ էր հաստատել պարտիական ընդհատակի հետ։ Դաշան նաև զենք էր հավաքում իր ընկերուհիների Լյուբայի, Դուսյայի, Տասյայի հետ։ Թշնամու զինվորներին Դաշան ասում էր, որ ինքը դերասանուհի է։

— Երգում եմ, պարում, արտասանում։

Զինվորները լսում էին նրա երգն ու կատակները և քրքջում։ Նրանք սիրում էին օղի խմել։ Դրա համար էլ սիրով ընդունեցին Դաշայի բերած թունդ օղին։ Պահակախումբը խմեց և հարբեց։ Թաքստոցներից դուրս եկան տղաները, կապկպեցին պահակներին։ Երկու հարյուր ռազմիկներ փախան ճամբարից։



Պոլյայի հետ միասին, Պարֆենտին «տպարանն» իրենց տուն տարավ։ Ֆաշիստները մոլեգնում էին, բայց չէին կարողանում գտնել գաղտնի գործող մարդկանց։ Սրանք հաց էին հասցնում պարտիզաններին, ռադիոյով Մոսկվայից գաղտնի լսում մեր զորքերի Ստալինգրադյան հաղթանակների մասին։

Ոստիկանապետ Անուչկուի հրամանով ձերբակալվեցին չորս հոգի։ Դմիտրիին ու Կլիմենյուկին ասացին. «Գյուղում պարտիզաններ են գործում, ասացեք անունները, և ձեզ բաց կթողնենք»։ Տղաները զարմացած պատասխանեցին. «Ոչ մի պարտիզանի չենք ճանաչում»։ Նրանց ծեծեցին ու նետեցին ցուրտ խուցը։ Առավոտյան հարցաքննեցին մեկին։ Վերջինս կապույտ, անմեղ աչքերը բարձրացրեց Անուչկուի վրա և ամաչկոտ ժպիտը դեմքին, ասաց. «Պարտիզանների մասին ես ոչինչ չգիտեմ, բայց եթե լսեմ, անպայման ձեզ կասեմ»։ Նա նույնիսկ ստորագրություն տվեց։ Անուչկուն գոհ էր։ Հետո բերեցին Ալեքսանդր Կուչերին։ Կլիմենյուկն ու Դմիտրին լսեցին, թե ինչպես էին հարվածում Ալեքսանդրին, իսկ նա ճչում էր և հառաչում։ Կես ժամ հետո Ալեքսանդրին ազատեցին։

Հենց այդ օրն էլ սկսվեցին ձերբակալությունները։ Ալեքսանդրը մատնել էր ընկերներին։



Մորգունենկոյի դեմքը սևացել էր ծեծից, հագուստը պատառոտվել։ Խցի հատակին նստել էին հարցաքննությունից նոր վերադարձած տղաներն ու աղջիկները։ Միխայիլ Կրավեցի գլուխը ծակել էին չորս տեղից, արյունը հոսում էր դեմքի վրայով։ Դաշան օգնում էր նրան։ Միխայիլը թույլ ժպտում էր, չնայած, որ ցավից աչքերը մթնում էին։ Կրավեցին էին նայում Մորգունենկոյի խոր աչքերը, որոնք, ինչպես միշտ, խաղաղ ու լուսավոր էին։ Նա հպարտանում էր իր աշակերտով, որ ժպտում էր տառապանքի պահին, հաղթահարում էր ցավը։ Նա ոչ ոքի չէր ասում, թե ինչպես պետք է պահի իրեն, բայց նրանից սովորում էին։

Նրան նորից հարցաքննության տարան։ Անցավ մեկ ժամ, հետո՝ երկրորդը... Դուռը բացվեց, խուց նետեցին արյունաթաթախ Մորգունենկոյին։ Նրա մարմինն ուռած էր։ Ոստիկանները նրան մերկացրել էին ու ծակծկել մեխերով։ Երկար ժամանակ նա չէր կարողանում բարձրանալ գետնից, նայում էր առաստաղին, իսկ երբ հայացքը դարձրեց իր սաներին, աչքերը կրկին խաղաղ էին, վճիտ, լուսավոր։ Ոստիկանները ջարդեցին Բորիս Դեմիդենկոյի ոտքը։ Միխայիլ Կլիմենյուկին չորս հարյուր հարված հասցրին, որից նրա ոսկորները ջարդվեցին։ Կլիմենյուկն ատելությամբ լի հայացքով էր պատասխանում նրանց։

Պոլյան կանգնած էր սպայի առաջ։

— Դու պետք է խոսե՞ս, գեղեցկուհի,— հարցրեց սպան։

Պոլյան չպատասխանեց, շրջվեց։ Սպան բերանից հանեց ծխախոտը և սեղմեց Պոլյայի ճակատին, պարանոցին, կրծքին։ Կայծեր էին անցնում աղջկա երակներով։

— Ասա՛, որտե՞ղ է Պարֆենտի Գրիշչենկոն։

— Ոչինչ չեմ ասի...

Նրա ձեռքերը դրեցին դռան տակ։ Բայց Պոլյան լռում էր։

Տասն օրից հետո բոլորին գնդակահարեցին։



Պարֆենտին ու Դմիտրին օրերով թափառում էին Բուգի առափնյա անտառներում, հուսալով գտնել պարտիզաններին. բայց ապարդյուն։ Վերադառնալուց հետո Դմիտրին թաքնվեց ձեղնահարկում։ Նրան բռնեցին և տեղնուտեղը գնդակահարեցին։ Գտան նաև Պարֆենտիի հետքը։

Գյուղից դուրս նրա առաջը կտրեց ձիավոր ոստիկանը։ Պարֆենտին հարձակվեց ոստիկանի վրա, ատրճանակով սպառնալով իջեցրեց ձիուց, ապա հեծավ ձին ու սլացավ։ Այս անգամ էլ նա անտառում չհանդիպեց պարտիզաններին և կրկին վերադարձավ Կրիմկա։ Կոլտնտեսության դարբնոցը հերոսի վերջին ապաստարանն էր։ Առավոտյան նրան նկատեցին։ Պարֆենտին կտուրից թռավ և վազեց դեպի Կոդիմա գետը։ Նրան ուզում էին կենդանի բռնել։ Պարֆենտին կրակում էր։ Մնաց միայն մեկ գնդակ։ Նա իրեն նետեց գետի ջրերի մեջ։

— Ջալատը չհանձնվեց, ես էլ չեմ հանձնվի,— ասաց Պարֆենտին։

Նա ատրճանակի փողը դրեց քունքին։

Այսպես դադարեց գործելուց «Պարտիզանական կայծ» հերոսական կազմակերպությունը։ Պանծալի կոմերիտականների, նրանց մարտական գործերի մասին մարդիկ կհիշեն դարեդար։ «Պարտիզանական կայծ» անունն են կրում Կրիմկա գյուղի կոլտնտեսությունը և այն դպրոցը, որտեղ սովորել են Պարֆենտի Գրեչանին ու նրա ընկերները։



Ուկրաինական Կրիմկա գյուղում կա սովխոզային մի պուրակ։ Այդտեղ մատաղ ակացիաների տակ է գտնվում Հայրենական պատերազմի պատանի հերոսների գերեզմանը։ Գարնանը, երբ ծաղիկներն իրենց քնքուշ թերթիկներն են բացում, մարդիկ գալիս են գերեզմանի մոտ։ Հերոս կոմերիտականների պայծառ կերպարները կանգնում են նրանց առաջ։ Պիոներներն այս գերեզմանի մոտ երդվում են ապրել, սիրել Հայրենիքը և պայքարել, ինչպես պայքարել են կոմունիստ Վլադիմիր Մորգունենկոն, կոմերիտականներ Պարֆենտի Գրեչանին, Դմիտրի Պոպիկը, Իվան Բելիչկովը, Միխայիլ Կրավեցը, Պելագեա Պոպիկը, Դարյա Դյաչենկոն, Միխայիլ Կիմենյուկը, Վլադիմիր Վայսմանը և մյուս հերոսները։

ՀՐ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

# ԼԵԳԵՆԴ ՋՐՀՈՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ԿԱՆ ՋԺՈ
(Չինական գրող)

Նկ. Ռ. ԱՎԵՏԻՍՅԱՆԻ

Այս պատմությունը ես լսել եմ ներքեւ գավառի լեռնային հովիտներից մեկում։ Երկրորդ տարին էր, ինչ այդտեղի ժողովուրդը տառապում էր երաշտից։ Երբ ես այնտեղ էի, սաստիկ շոգ էր. անձրև վաղուց չէր եկել։ Ժողովրդական կառավարությունը գյուղացիներին օգնել էր հացահատիկով և փողով։ Մարդիկ ամենուրեք ջրհորներ էին փորում։ Ես կանգ առա մի կիսափոր ջրհորի մոտ և նստեցի հանգստացող գյուղացիների կողքին։

Այդ ժամանակ ճանապարհի վրա երևաց մի ծերունի, որը գալիս էր մոտակա գյուղից։ Նա քայլում էր ձեռնափայտի օգնությամբ և անվերջ հազում էր։ Նրան տեսնելուն պես գյուղացիներն աշխուժացան։ Նրանցից մի քանիսն ընդառաջ վազեցին, ծերունուն բերեցին ու հարգանքով նստեցրին իրենց կողքին։

— Է՜, քեռի,— ասաց գյուղացիներից մեկը,— աշխատելն արդեն ուժերիցդ վեր է... լավ կլինի մի բան պատմես, քանի դեռ մենք հանգստանում ենք։

— Ճիշտ է ասում,— հաստատեցին մյուսները.— սկսիր. դրանով դու կօգնես մեր աշխատանքին։

Ես նայեցի ծերունուն. «Չէ՞ որ նա անընդհատ հազում է և ծանր է շնչում, էլ ինչպե՞ս կարող է բան պատմել», մտածեցի ես և փորձեցի ասել.

— Ի՞նչ եք կպել նրանից... Թողեք, որ ծերուկին հանգստանա։

— Դուք մի՛ նայեք նրա ծերությանն ու հազին,— առարկեց մեկը,— սա մարդ չէ, այլ ուղղակի պատմություններով լի սնդուկ... Երբ սկսում է պատմել, զարմանքից ապշում ես, թե այդքան բան նա որտեղի՞ց գիտե։

Գյուղացիները ժպտացին և գլխով հավանություն տվին նրա ասածին։ Իմ խոսքերը ծերունուն դուր չեկան։ Նա խորը շունչ քաշեց և խեթ

հայացքով նայեց ինձ։ Երբ բոլորը լռեցին, նա փակեց աչքերն ու սկսեց.

— Քանի որ դուք ջրհոր եք փորում, ես ձեզ կպատմեմ ջրհորների մասին...

Դա եղել է շատ վաղուց, այն հեռավոր ժամանակները, երբ աշխարհում ոչ մի ջրհոր չի եղել։ Դե, մարդիկ դրա կարիքը չէին էլ զգում։ Դա ոսկե դար էր։ Երկրի վրա կատաղի քամիներ չէին լինում, իսկ անձրև գալիս էր այնքան, որքան պետք էր՝ ո՛չ շատ, ո՛չ քիչ։ Դաշտերը ջրելու մասին ոչ ոք չէր մտածում։ Որտեղ տան կտուրներից ծուխ էր ելնում, այնտեղ էլ հոսում էր գետի ջուրը։ Այն ժամանակ ապրելը հեշտ էր և ուրախ։ Բայց չգիտեմ, թե ինչ հանցանքի համար ժողովրդին սկսեց կառավարել մի դաժան և չար կայսր։



Երբ բոլորը լռեցին, նա... սկսեց։

Նա անխնա ճնշեց ժողովրդին և գործեց ամեն տեսակի անարդարություններ։

Այդ մասին իմացավ երկնքի տերը, զայրացավ և մարդկանց այլևս չուղարկեց ո՛չ բարեբեր անձրև, ոչ էլ զով քամի։ Երեք տարվա ընթացքում երկրի վրա անձրևի ոչ մի կաթիլ չընկավ։ Ժողովուրդը դաշտերից մի հատիկ անգամ չհավաքեց։

Սկզբում մարդիկ մի կերպ ապրում էին։ Նրանց պահեստներում կար և՛ հացահատիկ, և՛ ջուր։ Բայց չորրորդ տարին դարձյալ երաշտ եղավ։ Ցամաքեցին գետերը, սպառվեցին հացի պաշարները։ Ի՞նչ կարելի էր անել։ Մարդիկ սկսեցին մորթել անասունները և ջրի փոխարեն արյուն խմել։ Շուտով անասուն էլ չմնաց։ Ջորացած շուրթերով մարդիկ աղերսում էին. «Հաց... ջուր...»։

— Բայց ո՞վ կարող էր նրանց օգնության հասնել,— ծերունուն ընդհատեցին ունկնդիրներից մի քանիսը։

— Ահա թե ով։ Ինչքան մարդ մեռավ այդ ժամանակ, պատմելն անգամ սարսափելի է։ Կենդանի մնացածներին մնում էր դիմել Երկնային վիշապին[1]։

— Է՜, դա արդեն ցնդաբանություն է,— աղաղակեցին այս ու այն կողմից։

— Լսեք և իմացեք։— Ծերունին փայլող աչքերով նայեց գյուղացիների կողմը և շարունակեց.— մարդիկ սկսեցին ձողեր վառել Երկնային վիշապի կավե արձանի մոտ։ Ժողովուրդը լցվեց եկեղեցի և կես ամիս անընդհատ աղոթում էր։ Բայց անձրև չկար ու չկար...

Մարդիկ Երկնային վիշապի համար զոհաբերեցին իրենց ունեցած վերջին գառներն ու խոզերը։ Քառասունինն օր շարունակ նրանք երգում ու աղերսում էին, փորձելով շարժել նրա գութը։ Բայց հիսուներորդ օրը օդը շիկացած էր առաջվա պես, և հողը իզուր տեղը ջուր էր պապակում։

Այդ ժամանակ մարդիկ բարկացան և Երկնային վիշապի արձանը եկեղեցուց բերեցին փողոց։ Նրանք զայրույթով արձանը վեր-վեր էին բարձրացնում, աջ ու ձախ տանում-բերում։ Քառասունինն օր տևեց այդ թափորը։ Բայց հիսուներորդ օրը երկինքը դարձյալ անամպ էր, արևը՝ կիզիչ։

Խելակորույս մարդիկ արձանը քաշ տվեցին հրապարակ։ Երկու օր նրանք շրջապատել էին կավե կուռքը, ողորմություն էին խնդրում, լալիս ու ողբում։ Ոչինչ չօգնեց։ Մարդիկ ցասումից արձանը գետին գլորեցին և սկսեցին հարվածել ինչով պատահեր։ Բայց երկնակամարում ամպերի ստվերներ անգամ չերևացին։

Մեռնողների թիվը գնալով մեծանում էր։ Թվում էր, թե հասել է աշխարհի վերջը։ Այլևս ի՞նչ կարելի էր անել։ Մարդիկ գետնին պառկեցին և վշտով սպասում էին անխուսափելի մահվան։

Այդ ժամանակ ինչ-որ տեղից մի մարդ հայտնվեց։ Բարձրահասակ էր, լայն ճակատով ու խելացի աչքերով։ Նա բոլորին մեկ առ մեկ գետնից վեր բարձրացրեց և ասաց.

— Վե՛ր կացեք, վե՛ր կացեք։ Եկեք միասին մտածենք, թե ի՞նչ ենք անելու։

— Է՜, միևնույն է ոչինչ անել չես կարող։— Մարդիկ անհույս թափահարեցին ձեռքները։— Մեր կայսեր անարդարություններից աստված զայրացել է և մեզ անձրև չի ուղարկում։ Իսկ Երկնային վիշապը իր շուրջը տեսնում է ամայություն ու

[1] Հավատացյալ չինացիների կարծիքով Երկնային վիշապը անձրևի աստված է։

մահ, բայց մեզ օգնություն չի հասնում։ Էլ ինչի՞ վրա պետք է հույս դնել։

Եվ մարդիկ նորից ընկան գետնին ու սպասում էին մահվան։ Բարձրահասակ մարդը մի քիչ մտածելուց հետո հրապարակ գնաց և տեսավ արևի տակ ընկած արձանը։ Նա մի հայացք գցեց արձանի վրա, վերադարձավ մարդկանց մոտ և ուրախացած գոչեց.

— Էհե՜յ, ոտքի՛ ելեք, դեռ ամեն ինչ կորած չէ։

Մարդիկ արագ ոտքի կանգնեցին։

— Իսկ ի՞նչ կարելի է անել, ինչպե՞ս փրկվել։

Բարձրահասակ մարդը նրանց հրապարակ տարավ և ցույց տալով արձանն ասաց.

— Հապա նայեցեք արձանին։ Չէ՞ որ Վիշապը աչքեր չունի։ Չար կայսրը գողացել է նրա աչքերը և թաղել գետնի տակ։ Այդ է պատճառը, որ նա իր շուրջը ոչինչ չի տեսնում և զայրացած է։

Ծերունուն լսողները շնչները պահած անշարժ նստել էին։ Միայն մեկը, որն ամենաերիտասարդն էր, կատակով ասաց.

— Է՜, քանի գնա ցնդաբանությունները կշատանան։ Կայսեր համար ինչի՞ էր պետք քո այդ երկնային վիշապը, որ նրա աչքերը թաղեր գետնի տակ։

Ծերունին նեղացած շոյեց մորուքը և ձեռնափայտի ծայրով խփեց երիտասարդին։

— Դու մի՛ ընդհատիր և լսիր... Մարդիկ նայեցին արձանին, և իրոք, աչքերի տեղ երկու փոսիկ տեսան։ Նրանք սկսեցին կշտամբել միմյանց...

— Միայն թե մի՛ վիճեք,— ասաց բարձրահասակ մարդը,— մենք պետք է անմիջապես փնտրենք Վիշապի աչքերը։ Եթե աչքերը գտնենք, նա անձրև կուղարկի։

— Ճիշտ է,— գոչեցին մարդիկ և միահամուռ կերպով գործի անցան։ Նրանք բահ ու բրիչ բերեցին և սկսեցին փորել հողը։ Իսկ բարձրահասակը նայում էր նրանց և իմաստալից ժպտում։ Հետո նա էլ բահ վերցրեց։ Փորում էր բոլորի հետ հավասար և քաջալերում նրանց...

Շուտով ժողովուրդը հոգնեց։ Քաղցն ու ծարավը տանջում էին մարդկանց։ Նրանք վայր էին ընկնում, բայց նորից ոտքի կանգնում, հավաքում վերջին ուժերը և շարունակում քանդել հողը։ Վերջապես աշխատելը բոլորովին անհնարին դարձավ։ Այդ ժամանակ բարձրահասակը պատվիրեց, որ մի քանի տղամարդ ձեռքերով պահեն մեկին, իսկ նա փորի։ Մարդկանց ուժերը բոլորովին սպառվեցին, և նրանք նորից սկսեցին մտածել մահվան մասին։ Բայց բարձրահասակը, ձեռքից բահը չգցելով, քաջալերում էր նրանց.

— Մի՛ վհատվեք, մի՛ վհատվեք։ Փորեք, փորեք։ Երբ գտնենք Վիշապի աչքերը, անձրև կգա, ջուր և ուտելիք կլինի։

Սակայն հեշտ չէր գտնել Վիշապի աչքերը։ Մարդիկ յոթանասուն-ութսուն օր շարունակ աշխատեցին, բայց կորած աչքերը չգտան։ Շատերն ընկճվեցին և դեն շպրտեցին բահերը։ Իսկ մյուսներն այնքան էին ուժասպառ եղել, որ այլևս չէին կարող բահ բռնել ու հնձված խոտի նման տապալվում էին գետնին։ Նա բարձրացնում էր ուժասպառներին և ասում.

— Մենք պետք է ավելի շատ փորենք. չար կայսրը խորն է թաղել Վիշապի աչքերը։

Եվ մարդկանց աչքերում նորից հույսի շող փայլեց։ Նրանք նորից վերցրին բահերը։ Եթե չփորեն, մահն անխուսափելի է, իսկ փորելով նրանք գուցե գտնեն Վիշապի աչքերը և փրկվեն կործանումից։ Հուսահատ մարդիկ դադարեցին տրտնջալուց, հոգնածները լարեցին բոլոր ուժերը։ Ամեն օր, առավոտից մինչև ուշ գիշեր նրանք փորում էին ու փորում...

Այսպես նրանք աշխատեցին դարձյալ յոթանասուն-ութսուն օր, հետո նորից այդքան։ Եվ վերջապես եկավ այն երջանիկ օրը, երբ ժողովուրդը գտավ այն, ինչ փնտրում էր։

— Վիշապի աչքե՞րը,— միաձայն հարցրին լսողները։



— Մի՛ վհատվեք, մի՛ վհատվեք։ Փորեք, փորեք։

Ծերունին բացեց աչքերը։ Անկաշկանդ ծիծաղից ցնցվում էր նրա սպիտակ մորուքը։

— Ո՛չ, ոչ թե Վիշապի աչքերը... այլ... ջո՜ւր, սովորական ջուր...

Ծերունու լսողները հանգստացած շունչ քաշեցին և ժպտացին, իսկ նա երկարեց վիզը, ավելի լայն բացեց աչքերը, ձեռքը առաջ մեկնեց և բարձր ձայնով շարունակեց.

— Ա՜խ, եթե դուք տեսնեիք, թե մարդիկ ինչպես էին ուրախացել։ Նրանց դեմքերը աստղերի նման փայլում էին։ Շրջապատը կենդանացել էր։ Նրանք սկսեցին տակառներով ու դույլերով դուրս հանել թարմ ու սառնորակ ջուրը։ Մարդիկ սկզբում հագեցրին իրենց ծարավը, իսկ հետո ջուրը տարան դաշտերը։ Շուտով դաշտերը փարթամորեն կանաչեցին։ Վիշապի աչքերի մասին մարդիկ մտածելն անգամ մոռացան։ Իսկ չար կայսրը, Երկնային վիշապը և աստված — բոլորն էլ իրականում լոկ առասպելներ են։ Մարդիկ միայն սեփական աշխատանքի շնորհիվ գետնի տակից ջուր հանեցին և փրկեցին իրենց կյանքը։ Եթե մարդն աշխատում է, ապա սարսափելի չեն ո՛չ ձախորդությունը և ոչ էլ զրկանքը։ Եվ ահա այդ ժամանակվանից երկրի վրա ջրհորներ երևացին։

Ծերունին վերջացրեց պատմությունը։ Տիրեց քար լռություն։ Քիչ հետո գյուղացիներից մեկը հարցրեց.

— Դա ե՞րբ է եղել։

— Ե՞րբ... դե՛, ավելի քան հազար տարի առաջ։

— Իսկ ո՞վ էր այդ բարձրահասակ մարդը։

— Ո՞վ...— ծերունին ժպտաց, իր բարի ու ջերմ հայացքով նայեց բոլորին և կամաց շոյելով մորուքը ասաց,— դա նախագահ Մաոն էր, մեր նախագահ Մաո Ցզե-դունը։

— Ի՞նչ ես ասում,— առարկեց մեկը,— չէ՞ որ ինքդ ասացիր, թե այդ ժամանակներից անցել է ավելի քան հազար տարի։ Մի՞թե Մաո Ծզե-դունը կարող էր այդ ժամանակ ծնված լինել։

Գյուղացիները ծիծաղելով ոտքի կանգնեցին։ Ամենաերիտասարդը նորից ասաց.

— Ա՛յ թե ծերուկը սիրում է փչել, հա՛։ Իրոք, որ հեքիաթների սնդուկ է։

— Իսկ դու լսի՛ր,— նեղացած գոչեց ծերունին,— բոլորդ էլ նստեցեք։

Նա երկար, ծանր հազալուց հետո կրծքով հենվեց իր ձեռնափայտին և վիրավորվածի տոնով ասաց.

— Ո՛չ, որդիներս, ես չփչեցի... Դա ձեզ է թվում, թե նախագահ Մաոն քառասուն-հիսուն տարեկան է։ Նա հազարավոր տարիներ է ապրել և դեռ շատ դարեր կապրի։ Մաո Ցզե-դունը միշտ էլ ժողովրդի հետ է եղել։ Երբ ժողովուրդը դժբախտության մեջ է ընկել, Մաոն օգնության է հասել։ Ահա թե ինչու դուք հաճախ գոչում եք. «Տաս հազար տարի Մաո Ցզե-դունին», «Տաս հազար տարի Մաո Ցզե-դունին»։ Ինչպես երևում է, դուք ինքներդ էլ չեք հասկանում, թե ինչու եք այդպես ասում...

Ծերունին նորից փակեց աչքերը և սկսեց հազալ։ Ինձ շրջապատեցին մի քանի գյուղացի։

— Դուք ի՞նչ եք կարծում, ծերունին ճի՞շտ պատմեց։

— Ինչո՞ւ չէ. իմ կարծիքով ճիշտ էր։

Գյուղացիները ժպտալով նայեցին ծերունուն և օրորեցին գլուխները։

— Դե՜, ծերունի է էլի, գիտե, թե ինչ է պատմում,— ասացին նրանք և վերցրին բահերը։

Իսկ ծերունին աչքերը փակել և անձայն ծիծաղում էր։ Այդ ծիծաղից ցնցվում էր նրա երկար, ալեհեր մորուքը։

Թարգմ. Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

# ՆՐԱ ՈՒՂԻՆ

ԳՐ. ՔԵՇԻՇՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Արամը խեթ հայացքով նայեց իր ընկերոջը։

— Դու քո ավտոյով մի՛ գոռոզանա,— ասաց նա,— հիմա ինքնաթիռս կսարքեմ, տեսնենք ով կհաղթի։

— Քո ինքնաթիռը չի թռչի, իսկ իմ ավտոն, ա՛յ, հիմա կսլանա։

Եվ Ռուբենը մի ոտքով ծնկի եկավ ուղեգորգի վրա, վարժ շարժումով լարեց ավտոն ու բաց թողեց...

Արամը գլուխը թեքեց չտեսնելու համար, բայց չկարողացավ իրեն զսպել. աչքի ծայրով հետևեց ավտոյին, որը թափով սլացավ սենյակով մեկ, դեմ առավ անկյունում դրված պահարանին ու կանգնած շարունակեց մեղմ աշխատել։

— Այդ էլ քո ավտոն,— ասաց Արամը, վատ սքողված նախանձով, դեմքին արհամարհական տեսք տալով,— կպչում է մի բանի թե չէ, կանգ

է առնում, իսկ իմ ինքնաթիռը օդում ազատ կթռչի ինչքան ուզես։

Նա ուղղեց շրթունքները և սենյակի մի անկյունում նստելով, սկսեց շուռ ու մուռ տալ խաղալիք-ինքնաթիռը, գուրգուրանքով սրբել թևերն ու թոցնել։

Ռուբենը մի քանի անգամ էլ լարեց ու բաց թողեց ավտոն։ Հետո նա էլ նստեց մի ուրիշ անկյունում և լռեց։ Քիչ հետո նա անհամարձակ վեր կացավ, նայեց շուրջը, նայեց Արամին և դանդաղ մոտեցավ։



— ...իսկ իմ ավտոն, ա՛յ, հիմա կսլանա։

— Տուր քո ինքնաթիռով մի քիչ էլ ես խաղամ,— ասաց նա և ձեռքը մեկնեց առաջ։

Արամն անխոս նրան տվեց խաղալիքը։

— Լավն է... միայն թե մոտոր չունի, արի ավտոյի մոտորը դնենք մեջը, հը՞...,— ասաց նա, ուրախացած իր գյուտով։

— Ավտոյի մոտորով չի թռչի,— լրջությամբ պատասխանեց Արամը,— դրան ինքնաթիռի մոտոր է պետք։



Նոր շրջապատից շփոթված, մի ձեռքով թևի տակ պինդ սեղմելով փաթեթը, մյուսով մայրիկի ձեռքը բռնած, Արամը մտավ Պիոներների պալատ։

Դիրեկտորը ժպտալով դիմավորեց նրանց.

— Նստեցեք,— ասաց նա աթոռ առաջարկելով,— ես ձեզ լսում եմ։

— Ես բերել եմ իմ տղային՝ Արամին, խնդրում եմ նրան ընդունեք ավիամոդելիստների խմբակ։

Դիրեկտորը քննող հայացքով ոտից-գլուխ նայեց տղային։ Նրա հայացքի մեջ Արամն անբավականություն կարդաց։ Վախենալով, որ չեն ընդունելու և կարծես պաշտպանություն փնտրելով, նա կպավ մորը։

— Դեռ փոքր է, տիկի՛ն,— լսեց նա պատասխանը։

Նա աշխատեց զսպել իրեն. կծեց շրթունքները։ Իսկ ձայնը շարունակում էր.— Դեռ փոքր է, չի հասկանա խմբակի ղեկավարի բացատրությունները։

— Ես կկարողանամ,— իր կամքից անկախ հանկարծ բացագանչեց Արամը և ինքն էլ անակնկալի գալով իր ձայնից, կամաց շարունակեց.— ես կկարողանամ, ես կաշխատեմ, ես...

Արցունքի կաթիլները կախվեցին աչքերի վրա։ Դիրեկտորը տեղից վեր կացավ և գրկեց տղայի ուսերը։

— Ո՞ր դասարանում ես սովորում,— ասաց նա, հակվելով դեպի տղան և աշխատելով ձայնին ավելի քնքշություն տալ։

Արամի փոխարեն պատասխանեց մայրը։

— Երրորդ դասարանում է, լավ է սովորում, բայց խելքն ու միտքը ինքնաթիռն է։

— Իսկ նա երբևէ պատրաստե՞լ է,— ձեռքը պահելով տղայի ուսին, մորը հարցրեց դիրեկտորը։

Արամը դողացող մատներով շտապ բացեց փաթեթը, բայց անմիջապես հիասթափվեց։ Սեղանի վրա կանգնեց ստվարաթղթից սարքած իր անճոռնի ինքնաթիռը։

— Դո՞ւ ես սարքել,— հարցրեց դիրեկտորը։

— Այո, ես...,— կմկմաց Արամը և գլուխը կախեց։ «Հիմա բոլորովին չի ընդունի», մտածեց նա։

Դիրեկտորը վերցրեց ինքնաթիռը նայեց բոլոր կողմերից և ասաց.

— Լավն է, շատ լավն է։

— Ես ձեր տղային կընդունեմ,— դառնալով մոր կողմը, ավելացրեց նա,— և եթե աշխատի, լավ ավիամոդելիստ կդառնա։

Մայրիկը գնաց։ Դիրեկտորը Արամին տարավ ավիամոդելիստների խմբակի սենյակը, որտեղ երկար սեղանի շուրջն աշխատող պիոներները գլուխները բարձրացրին և զննեցին ներս մտնող երեխային։

Խմբակի ղեկավարը մոտեցավ Արամին։

— Հրաչիկը քեզ կսովորեցնի։ Նա այս տարի մասնակցելու է ռեսպուբլիկական մրցումներին։



Արամը համարձակ քայլերով դուրս եկավ

ճամբարից։ Նա բարձր պահած տանում էր իր մեծ ինքնաթիռը։ Նրանից մի քայլ հեռու, մոդելի ծայրը բարձրացրած, քայլում էր Ռուբենը։

Այդ օրը տեղի էր ունենալու Տաղկաձորի ճամբարների պատանի ավիոմոդելիստների մրցությունը։ Արամը առաջին անգամ էր մասնակցում մրցումներին։

Տարիներ էին անցել այն օրվանից, երբ Արամն ու Ռուբենը իրար հետ վիճում էին, մեկն իր ինքնաթիռն էր գովում, մյուսն՝ իր ավտոն։

Պիոներների պալատի ավիոմոդելիստների խմբակում նա շատ բան սովորեց։ Սովորեց նաև



...բաց թողեց դեպի կապույտ երկինք:

չհուսահատվել։ Երկու շաբաթ առաջ, փորձնական թռիչքի ժամանակ Արամի մոդելը միանգամից և ուժեղ թափով բարձրացավ երկինք։ Ճամբարի ընկերներն ուրախությունից բղավեցին Արամին։

— Առաջին տեղն ապահովված է,— ասաց Ռուբենը հայացքը չկտրելով երկնքից, որտեղ մխրճվում էր իր ընկերոջ ինքնաթիռը։

Արամն ինքն էլ էր ուրախացել, բայց ժպիտ չէր տեսնում ավիոմոդելիստների խմբակի ղեկավարի՝ Հրաչիկի աչքերում։

Եվ հանկարծ ամեն ինչ փոխվեց։ Ինքնաթիռը մի պահ կարծես կանգնեց օդում և հետո գլխիվայր, ավելի արագ, քան բարձրացել էր, իջավ ներքև, խորտակվեց մոտակա անտառում։ Երեխաները վազեցին անտառ։ Անշարժ մնացել էր միայն Արամը և մի քիչ այն կողմ՝ Ռուբենը։

Երեխաները բերեցին ջարդված մոդելը։ Արամի սիրտը լցվեց, ուզեց լաց լինել։ Ատամներով սեղմեց դողացող շրթունքները, հետո, ուսի վրա զգալով մտերիմ մի ձայն, շուռ եկավ։

— Քո հաշվումների մեջ սխալ է եղել,— ասաց Հրաչիկը,— ինչ-որ սխալ, որ դու ինքդ պետք է գտնես և ուղղես, իսկ մնացածը լավ է։

— Մրցումներին չե՞մ մասնակցելու,— առանց նրան նայելու, տխուր ասաց Արամը։

— Եթե հասցնես նորը կառուցել, կմասնակցես։

Հաջորդ օրվանից Արամն սկսեց կառուցել նորը, այն նորը, որ հիմա ինքն ու Ռուբենը տանում են։

Բացատում հավաքվել էին բոլոր ճամբարների ավիոմոդելիստները և բազմաթիվ պիոներներ։

Սկսվեց մրցությունը։ Երբ հերթը հասավ Արամին, նա հուզմունքով, բայց վստահ, շարժման մեջ դրեց ինքնաթիռն ու բաց թողեց դեպի կապույտ երկինք։ Ռուբենը շունչը պահած նայում էր։

Ինքնաթիռն սկզբում ճոճվեց օդում, հետո բարձրացավ և սլացավ անտառի վրայով։ Երեխաները հիացական հայացքով նախ հետևեցին մոդելին, հետո սկսեցին վազել նրա ուղղությամբ։

Արամը գրավեց առաջին տեղը։ Ճամբարում բոլորն ուրախ էին, շնորհավորում էին նրան։




# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՖԱԲՐԻԿԱ

Ռ. ՂԱՍԱԲՅԱՆ

Լուսանկար՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

*Անցյալ ուսումնական տարին էր։ Մայակովսկու անվան դպրոցի պիոներական սենյակում հավաքվել էին պիոներական ակտիվիստներն ու վիճում էին։ Ջոկատավարներից մեկն ասում էր.*

*— Ի՞նչ ենք ձեռքներս ծալել ու նստել, եկեք խմբակներ կազմակերպենք։ Էլ ի՞նչ դրուժինա, որ ոչ մի խմբակ չունի։*

*Այդ օրը ստեղծվեցին առաջին խմբակները։ Որոշ ժամանակ անց պիոներական սենյակում նորից վիճաբանություն սկսվեց։*

*— Ես առաջարկում եմ մեր բոլոր տեխնիկական խմբակները միացնել ու կազմակերպել ֆաբրիկա,— ասում էր ավիամոդելիստների խմբակի ղեկավար Էդիկ Աբրահամյանը։*

*— Չէ՞ մի, ֆաբրիկա՞։ Ավելի լավ է գործարան կամ կոմբինատ,— ծաղրեց մեկը։*

*— Ինչո՞ւ ես ծաղրում. ես «Պիոներսկայա Պրավդա» թերթում կարդացել եմ, որ ուրիշ դրուժինաներ ստեղծել են իրենց պիոներական ֆաբրիկաները։*

*Մի պահ բոլորը լռեցին։ Երևում էր, որ Էդիկի առաջարկությունը մտածել էր տալիս։*

*— Ես էլ եմ համաձայն,— լռությունը խզեց Ռուդիկը,— կկազմակերպենք ցեխեր, ինչպես իսկական ֆաբրիկայում. կընտրենք ֆաբրիկայի դիրեկտոր, կնշանակենք տեխնիկական վերահսկողներ...*

*— Ռուդիկը ճիշտ է ասում, իսկ այժմյան խմբակավարները թող լինեն ֆաբրիկայի ցեխերի պետեր։*

*Եվ Էդիկի այդ առաջարկությունը համարյա անմիջապես հավանության արժանացավ, ապա այդպես չեղավ ֆաբրիկայի անվան ընտրության ժամանակ։ Էլ ինչ անուն ասես, որ չառաջարկեցին։ Բայց վերջում բոլորն էլ կանգ առան «Պիոների փարոս» անվան վրա։ Իսկապես լավ էր հնչում այդ անունը։*

*Շուտով սկսվեց իսկական աշխատանքը։ Խնդրեցին, որ ժամանակավորապես ֆաբրիկայի դիրեկտոր լինի ավագ ջոկատավար Ջեմմա Հասաբյանը։*

*— Ընկե՛ր Ջեմմա, առաջին օրերին դժվար կլինի. դուք եղեք ֆաբրիկայի դիրեկտորը, մինչև մի հարմար թեկնածու գտնենք։*

*Ջեմման սիրով հանձն առավ ղեկավարելու ֆաբրիկայի աշխատանքները։ Իրինային և Ռիտային հանձնարարեցին տեխնիկական վերահսկողության գործը։ Այսինքն նրանք ընդունելու էին ցեխերում պատրաստված իրերը և ստուգելու դրանց որակը։ Ստեղծվեց վեց ցեխ. ավիամոդելիստների, նավաշինարարների, կարուձևի, ձեռագործի, խաղալիքների և նկարների համար շրջանակների պատրաստման ու կազմարարական։ Ցեխերի պետեր նշանակվեցին խմբակների ղեկավարները։*

*Առաջին օրերին իսկապես որ դժվար էր. չկային ներկեր, ֆաներա, թել, կտորեղեն... Բայց ֆաբրիկայի ամեն մի «բանվոր» մի բան բերեց։ Տպարանից էլ ստվարաթուղթ խնդրեցին, Կույբիշևի անվան արտելից՝ ֆաներա, մետաքսաթելի ֆաբրիկայից՝ թել։ Դպրոցի միջոցներով գնեցին գործիքներ, իսկ ավագ ջոկատավարների դպրոցը նկարներ նվիրեց։*

*Հարկավոր էր տեսնել, թե ինչպես խոտանողներ՝ Իրինան ու Ռիտան խստորեն հսկում էին, որ աշխատանքները կատարվեն որակով։ Այս հարցում վեճերն անպակաս էին։ Հատկապես նկարների համար շրջանակ պատրաստողներից Վալերիկն ու Լյովան հաճախ էին ընդհարվում խոտանողների հետ։*

*— Լավ է, էլի, ի՞նչ ես նաղ ու տուզ անում,— ասում էր Լյովան, երբ Իրինան նրանից չէր ընդունում շրջանակը։*

*— Լա՞վ է. հապա մի նայիր, քեզնից փոքրիկներն ավելի մաքուր գործ են կատարում,— պատասխանում էր Իրինան,— սոսինձը թափել ես ամբողջ նկարի վրա։ Դեռ պարծենում էլ է, որ բոլորից շուտ է ավարտել գործը։*

*Բայց դու ինքդ ես ասում, որ բոլորից շուտ ես եմ վերջացրել գործը. քիչ բան է։*

*— Չե՛մ ընդունի, մեկ է, չե՛մ ընդունի,—*

առարկում էր խոտանողն ու նոր վերադարձնում աշխատանքը։

— Օհո՜, ինչ էլ խիստն է,— ասում էր Վալերիկն ու իր կատարած աշխատանքը դնում սեղանին։— Ընկե՛ր խոտան, վերցրեք, խնդրում եմ։

— Խոտանը դու ես, որ գործը կիսատ-պռատ ես թողնում,— ղայրանում էր Իրինան,— տե՛ս, շրջանակը ծուռ է դուրս եկել։ Հետաքրքիր է, եթե խանութում նման ապրանք առաջարկեն քեզ, կվերցնե՞ս։

— Դե լավ, լավ, կուղղեմ, էլ ի՞նչ ես հազար ու մի խոսք ասում։— Եվ Վալերիկը շարունակում էր իր աշխատանքը։

Ֆաբրիկայի աշխատանքներին որպես կոնսուլտանտներ օգնության եկան մեծերը։ ԴՕՍԱԱՖ-ի հրահանգիչ Այվազյանը խորհուրդներ էր տալիս



Կազմարարները աշխատանքի ժամին։

նավաշինարարներին, իսկ կարուձևի ցեխի շեֆությունը վերցրեց մի ծնող, որը լավ գիտեր այդ գործը։ Կոշիկի ֆաբրիկան խոստացավ կարի մեքենա նվիրել։ Երբ դպրոցի բակում մի սենյակ հատկացվեց ֆաբրիկային ու այնտեղ դրվեց կարի մեքենան, երեխաներն իրենց իսկական բանվորներ համարեցին։

Շուտով արհեստանոցում կարի մեքենայի կողքին հայտնվեցին զանազան ժամլակներ, մեծ ու փոքր խարտոցներ, մուրճեր...

Դպրոցում գործում էր նաև ռադիոտեխնիկական խմբակ, սակայն չգիտես ինչու այն չմիացավ ֆաբրիկային։

— Մենատնտեսնե՞ր,— հաճախ ծաղրում էին ֆաբրիկայի տղաները ռադիոտեխնիկական խըմբակի անդամներին։

Ամեն օր ֆաբրիկայի դիրեկտորին նորանոր երեխաներ էին դիմում խնդրելով իրենց աշխատանքի ընդունել։ Շուտով ֆաբրիկայի բանվորների թիվը հասավ յոթանասունի։

Հատկապես լավ էին աշխատում շրջանակներ պատրաստողների և կարուձևի ցեխերը։

Մոտենում էր տարեվերջը։ Մայակովսկու անվան դպրոցի պիոներական դրուժինան Պիոներների պալատում հավաքույթ էր կազմակերպել։ Այնտեղ բացվել էր նաև «Պիոների փարոս» ֆաբրիկայի աշխատանքների ցուցահանդես։ Այցելուները հիանում էին ձեռագործներով, նկարների համար պատրաստված շրջանակներով, մոդելներով։ «Պատրաստված է «Պիոների փարոս» ֆաբրիկայում», գրված էր ամեն մի աշխատանքի տակ։

Այս ուսումնական տարվա սկզբին կազմակերպված ֆաբրիկայի արտադրական խորհրդակցությունը ամփոփեց անցյալ տարվա կատարած աշխատանքները և նոր հանձնարարություններ տվեց բոլոր ցեխերին։

Այս տարի ֆաբրիկան ավելի է մեծացել։ Վեցի փոխարեն այժմ գործում են ութ ցեխ։ Ավելացել են լուսանկարչական և ռադիո ցեխերը։ Իսկ պիոներական ֆաբրիկայում այժմ աշխատում են հարյուրից ավելի երեխաներ։

Խաղալիքների ցեխը դպրոցին նըվեր բերած բաղմաթիվ կոլեկցիաների ու հերբարիումների համար սկսել է պատրաստել հատուկ տուփեր, կարուձևի խմբակի անդամները իրենց համար պատրաստելու են ուկրաինական զգեստներ։

Ֆաբրիկան կմասնակցի նաև Պիոներների պալատի կողմից կազմակերպվող խաղերի ու խաղալիքների կոնկուրսին, իսկ շրջանակներ պատրաստող ցեխը արդեն երեք հարյուր շրջանակի պատվեր է ստացել։

Այժմ արդեն շատերն են ցանկանում աշխատել ֆաբրիկայում։ Շուտով «Պիոների փարոս» ֆաբրիկայում կստեղծվեն նոր ցեխեր և նրանցում ավելի շատ երեխաներ կաշխատեն։

# ԿԻՏՐՈՆ ԵՎ ՏԱՆՁ

(Հատված «Բնության վերափոխողը» գրքից)

Վ. ԼԵԲԵԴԵՎ

Նկ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Հոկտեմբերի քսանութին լրանում է Իվան Վլադիմիրովիչ Միչուրինի ծննդյան հարյուր տարին:

Միչուրինը ծնվել է Ռյազանի նահանգի Պռոնսկի շրջանի Դոլգոյե գյուղում, որն այժմ կոչվում է Միչուրովկա: Գրաճանաչությունը նա սովորել է հոր մոտ, հետո ընդունվել է գավառային ուսումնարան:

Միչուրինի հայրը շատ էր սիրում բնագիտությունը, առանձնապես բուսաբանությունը: Նա փոքրիկ Իվանին սովորեցնում էր զբաղվել այգեգործությամբ՝ ցանել, պատվաստումներ ու փորձեր կատարել:

Հետագայում Միչուրինը հողամաս ձեռք բերեց և նվիրվեց իր սիրած գործին: Հողամասում նա աճեցրեց բույսերի բազմաթիվ նոր տեսակներ, մեծ հայտնագործություններ արեց բնության վերափոխման ուղղությամբ:

Շուտով Միչուրինի համբավը տարածվեց աշխարհով մեկ: Ամերիկյան հողագործության մինիստրը հատուկ նամակով խնդրեց Միչուրինին վաճառել իր տեսակների կոլեկցիան և առաջարկեց ընտանիքով տեղափոխվել Ամերիկա: Բայց մեծ հայրենասերը մերժեց այդ առաջարկը և մինչև կյանքի վերջը ծառայեց իր հայրենիքին:

Սովետական իշխանությունը բոլոր հնարավորությունները տվեց Միչուրինին իր աշխատանքները ավելի լայն ծավալելու համար: Նրա փորձնական աշխատանքի հիման վրա հիմնվեց պտղաբուծության ինստիտուտ և լաբորատորիա: Դրանց ղեկավարման գործը հանձնարարվեց Ի. Վ. Միչուրինին:

1934 թվականի սեպտեմբերին մեր երկիրը տոնեց Միչուրինի ստեղծագործական աշխատանքի վաթսուն տարին: Նա պատվավոր ակադեմիկոս էր: Միչուրինը վախճանվեց 1935 թվականի հունիսի յոթին:

Միչուրինյան ուսմունքով են առաջնորդվում այժմ մեր անծայրածիր երկրի կոլտնտեսությունները, գյուղատնտեսական հաստատությունները, դպրոցներն ու բուհերը:

*Այդ տարիների ընթացքում, Իվան Վլադիմիրովիչի այգում «ցերապադուսից» բացի աճեցին նաև բազմաթիվ այլ բույսեր։ Կանաչ տերևների միջև կարմրատակեց «Կիտայկան» և մի ուրիշ սերմնից՝ կարմիր «Ստանդարտ», հյութեղ, վարդագույն միջուկով խնձորը։ «Կանդիլ-կիտայկայի» կորիզից ստացվեց փոքրիկ, կարմրաթուշ գեղեցկուհի «Սինապ» խնձորը։ Այդ խնձորը շատ էր դուր եկել ծեր գիտնականին։ Ճիշտ է, մանր լինելու համար նա այդ պտուղը դասեց երկրորդ կարգում, բայց կոչեց իր անունով։*

*Երեսուն տարուց ավելի նա սպասեց մի խառնածին ծառի պտուղներին։ Դեռ 1889 թվականին նա խաչաձևել էր «Դարչնին» «Կիտայկայի» հետ։ Ինչպես երևում է տեղափոխությունները ազդել էին նաև այդ խառնածնի վրա։ Ամբողջ երեսուն տարի այդ փոքրիկ ծառը կարծես տնազ էր արել Միչուրինին։ Աճում էր, աճում, բայց պտուղներ չէր տալիս... և ահա, վերջապես, համարյա թե «Ավրորա» տանձենու հետ միաժամանակ, որը նույնպես ենթարկվել էր մի շարք տեղափոխությունների և վերատնկման, երեսունամյա վայելչակազմ խնձորենին առաջին անգամ ծածկվեց բավականին խոշոր, վառ կարմիր գծավոր պտուղներով։*

*«Կոմբինատ» բալի պտուղը հասավ. նրա քաշը հինգ գրամ էր, տրամագիծը հասնում էր համարյա թե երկու սանտիմետրի։*

*Աշխուժորեն աճեցին նոր սալորենիները, որոնց կորիզներն ուղարկված էին Հեռավոր Արևելքից։*

*Ծիրանի ծառերի մի ամբողջ շարք ամեն տարի կանոնավոր կերպով պտուղ էր տալիս։*

*Այգում բնակություն հաստատեց ևս մի չինական հյուր՝ «Անդռո» տեսակի բալը։ Նրա կորիզները ցանված էին 1923 թվականին։ Հինգ տարի հետո այդ կարճահասակ ու խիտ թփուտի վրա, որն իր բրդոտ տերևներով բոլորովին նման չէր բալենու, բալեր հայտնվեցին։ Այդ թուփը Իվան Վլադիմիրովիչը նախապես որոշեց հատկացնել երկաթուղու երկու կողմը տնկելու համար, որպեսզի գիծը ձմռանը ազատվի ձյունով ծածկվելու վտանգից։ Երբեմն էլ ամառ ժամանակ այդ պաշտպանության հմայիչ ցանկապատն իր պտուղներով կգրգռի անցնող-դարձող ուղևորների ախորժակը։*

Մի անգամ 1926 թվականի ամռանը Պավել Յակուշևն ասաց.

— Իվա՛ն Վլադիմիրովիչ, կարող եք ինձ վռնդել և այլևս երբեք ձեզ մոտ չթողնել, բայց ես նրանց ազգակցեցի...

— Այդ ո՞ւմ «նրանց»։

— Տանձը կիտրոնի հետ,— ասաց Յակուշևը և նույնիսկ ցնցվեց։

— Ինչպե՞ս,— ուսուցիչը զարմանքից ձեռքով փակեց ականջները.— տանձը կիտրոնի հե՞տ. դու ծիծաղո՞ւմ ես ինձ վրա, ինչ է... Ցիտրուսները պիրուսների հետ խաչաձևե՞լ... խախտում ես ընտանիքները... բայց որտեղի՞ց ճարեցիր կիտրոնի փոշին։

— Ես ոչ թե փոշոտել եմ,— բացատրեց աշակերտը,— այլ՝ պատվաստել...

Իվան Վլադիմիրովիչը մի պահ մտածելուց հետո ասաց.

—Հատկապես դրա համար քեզ կարելի է գովել։ Մի՞թե տունկի աչքն ես պատվաստել։

— Ո՛չ, Իվա՛ն Վլադիմիրովիչ, նոր եղանակով եմ պատվաստել։ Վերցրել եմ միհասակ երկու սերմնատունկ բույսեր։

— Եվ կպա՞ն։

—Շատ լավ կպան։

— Իսկ ինչո՞ւ ինձնից գաղտնի էիր պահում։

— Վախենում էի, որ վրաս կծիծաղեք, կհամոզեք՝ ձեռք քաշել...

— Ա՛յ, այդպիսի խոսքերի համար, իսկապես որ կարելի է վրադ ծիծաղել,— բռնկվեց ուսուցիչը։

— Լավ, ոչինչ, Իվա՛ն Վլադիմիրովիչ. մի բարկացեք... փորձը հաջողվեց, և ահա տեղեկացնում եմ ձեզ օրինական ձևով։

— Այո, հավանական է, որ դեռ վաղ է արդյունքների մասին դատելը։

— Ոչ, Իվան Վլադիմիրովիչ, արդեն ինչ-որ բաներ նկատվում են, տերևների վրա փայլ է առաջանում։

— Իսկ ե՞րբ ես պատվաստել։

— Հունիսի սկզբներին։

— Դե, գնանք ինձ ցույց տուր։

Աշակերտը տարավ ուսուցչին ցույց տալու իր առաջին հաջողությունը, ինքնուրույն աշխատանքի արդյունքը։ Իվան Վլադիմիրովիչ Միչուրինն ամբողջ մի ժամ զննեց Սիամի երկվորյակների նման իրար մեջ աճած մատղաշ տնկիները։ «Բերե» կոչվող տանձը և կիտրոնը մի տարվա ցանած էին։ Պատվաստման հատուկ ձևով արհեստականորեն աճեցրած, բոլորովին կանաչ և դեռ չփայտացած ցողունները ամուր կպել էին մեկը մյուսին։

— Ապրես, Պաշա՛,— ասաց նա վերջապես,— հետևիր, աչքի լույսի պես պահպանիր...



Ի. Վ. ՄԻՉՈՒՐԻՆ

և տեղի ունեցող բոլոր փոփոխությունների մասին ինձ անմիջապես տեղյակ պահիր։

Աշակերտը հրճվանքի մեջ էր։ Ծեր գիտնականը նույնպես անկեղծորեն գոհ էր։

«Ի՞նչ կարող էի անել ես առանց Պավելի և առանց Օսիպի,— երբեմն մտածում էր նա,— գործն առաջ է գնում։ Ամեն տարի նոր տեսակներ են ստացվում, ամեն տարի նոր խառնածին ծառեր ու թփուտներ են ծլում»։

Օսիպ Գլուշկովի աշխատանքները ոչնչով պակաս չէին Պավել Յակուշևի աշխատանքներից։ Ամեն տեղից հարցումներ, պահանջներ ու պատվերներ էին գալիս։ Մեկը խնդրում էր տաս հատ տնկի, մյուսը՝ հազար, իսկ ոմանք էլ՝ տաս հազար։ Երկու փորձադաշտերումն էլ արկղների լեռներ էին գոյացել...

Չնայած նրան, որ Իվան Վլադիմիրովիչը մի ժամանակ առանց ափսոսանքի էր բաժանվել Տուրմասովյան այգուց, շատ ուրախացավ Օսիպ Գլուշկովի հաջողությամբ։

— Կեցցես, Օ՛սյա...

Գլուշկովը բավարարված էր...

Գործն աճեց, ամրացավ, բուռն կերպով ծավալվեց։ Գլուշկովը գործի ավելի մեծ ծաղկում էր նախագուշակել։

1926 թվականի աշունը տվեց այսպես կոչված «Բելֆլեր-կիտայկա» և «Սուտակագույն» խառնածին տեսակի նոր խնձորենու պտուղները։ Խնձորները կարմիր էին, գեղեցիկ։ Նոր խնձորենին կոչվեց «Կոմսոմոլեց»։

— Օ՛սիպ Ստեպանովիչ, քո պատվին, այդպես եմ անվանում...

Գլուշկովն այս դեպքում էլ չառարկեց։

Թարգմ. Վ. ԱՐԱՄՅԱՆ

# ՊԱՏԱՆԻ ԲՆԱՍԵՐՆԵՐԻ ՊԱՎԻԼԻՈՆԸ

Ռ. ԱԲԱԼՅԱՆ

Լուսանկար՝ Ն. ԳՐԱՆՈՎՍԿՈՒ (ՏԱՍՍ)

Ահա փռվում է մի լայն, ասֆալտապատ պողոտա, որի երկու կողմերում բարձրանում են մատաղ կեչիների, կաղամախիների և շատ ուրիշ ծառերի զովասուն, սքանչելի պուրակները։ Հապա մարգաթմբերի վրա աճած ծաղիկնե՜րը... Պողոտայի երկու կողմերում, բարձրանում են Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսի գեղատեսիլ պավիլիոնները։ Բայց ձեզ երևի ամենից շատ կհետաքրքրի պատանի բնասերների պավիլիոնը, որտեղ կա յոթանասուներկու ստենդ։ Յոթանասուներկո՜ւ... հավանաբար կզարմանաք դուք։ Իսկ դուք գիտե՞ք, որ պատանի բնասերների առաջին խումբն ստեղծվել է 1918 թվականին Մոսկվայի Սոկոլնիկիի շրջանում, բնության պատանի սիրողների կայանում։ 1929 թվականին այդպիսի խմբակների թիվն արդեն հասնում էր հազար հինգ հարյուրի, որոնց մեջ ընդգրկված էին մոտ վաթսունհինգ հազար պիոներ։ Այժմ Սովետական Միությունում գործում են պատանի բնասերների վաթսուն հազար խմբակ։ Մոտ երկու միլիոն բնասերներ կան այդ խմբակներում։ Դե, հիմա պատկերացրեք, թե ինչքա՜ն խիստ ընտրություն է կատարվել, որ դրանցից միայն յոթանասուներկուսի աշխատանքն է ցուցադրվել այստեղ։

Ձեզանից ո՞վ չի տեսել նկարիչ Իոհանսոնի հայտնի նկարը՝ Վ. Ի. Լենինը Կոմերիտմիության երրորդ համագումարում։ Այս նկարով է սկսվում պավիլիոնի առաջին սրահի էքսպոնատների ցուցադրումը։ Սրահի աջ մասում դրված է կինոէկրան։ Առանց սենյակը մթնեցնելու այդ էկրանի վրա դուք կտեսնեք կինոնկարներ՝ նվիրված պատանիների աշխատանքներին։ Կիևի դպրոցականները ցուցադրում են իրենց պատրաստած ավիոմոդելները, Լենինգրադի պիոներները՝ նավեր, Հեռավոր Սիբիրի պիոներները՝ իրենց կենդանի անկյունը, որը թերևս ամենահարուստն է կենդանիների ու թռչունների տեսակներով։

Պավիլիոնում շատ ուրիշ էքսպոնատներ էլ կան։ Ահա քայլող էքսկավատորը, որ պատրաստել են Նովոչերկասկի պատանի տեխնիկների կայանի անդամները։ Էքսկուրսավարը սեղմում է էլեկտրական կոճակը և տրահում աղմկում են մեխանիզմները, ինչ-որ տեղից դուրս է թռչում ավտոմեքենան և կանգնում էքսկավատորի շերեփի տակ։ Մեքենայի վերամբարձ դանդաղորեն իջնում է, շերեփը թափով խրվում է ավազի մեջ, իսկ քիչ հետո ավազը դատարկվում է ավտոմեքենայի թափքի մեջ։ Ավտոն ետ է գնում։

Հապա դպրոցական էլեկտրակայանը։ Ուղղակի զարմանալի է, թե Էստոնիայի Էլվասկի շրջանի յոթնամյա դպրոցի պատանիներն ինչպես են կարողացել պատրաստել այդ կայանը։ Ախր դա իսկական էլեկտրակայան է...

Զենիթում փայլում է արևը։ Հեռվում երևում են կոլտնտեսային անծայրածիր դաշտերն ու այգիները, աշխատում են տրակտորները։ Բայց ահա արևը մայր է մտնում։ Քիչ-քիչ մարում են ցերեկվա լույսերը։ Երկնակամարում հազիվ նշմարվում է լուսնի գունատ մահիկը։ Քիչ հետո շրջապատը սուզվում է անհուն խավարի մեջ։ Լսվում է ջրի ուժգին խշշոց, աղմկում են փոքրիկ էլեկտրակայանի տուրբինները, վառվում են դպրոցի և գյուղական ակումբի լույսերը, փողոցներում ուրախ բոցկլտում են Իլյիչի լամպերը։

Գյուղի դպրոցականներն այդ կայանը պատրաստել են իրենց ուժերով, լույս տվել իրենց դպրոցին ու ակումբին։ Զարմանալին այն է, որ կայանն ավտոմատ է։ Բայց այդ էլ չի բավարարում պատանի տեխնիկներին։ Նրանք մտադիր են այս տարի ավելացնել էլեկտրակայանի հզորությունը և լույս տալ նաև կոլտնտեսության ֆերմաներին։

Երևանի № 17 դպրոցն էլ այստեղ ունի իր առանձին ստենդը։ Յոթանասուներկու աշակերտ մասնակցում են պատանի տեխնիկների խմբակի

աշխատանքներին։ Դպրոցի արհեստանոցն ունի էլեկտրական սղոց, ծակիչ, հարթիչ և այլ հարմարանքներ։

Անցյալ տարի խմբակի անդամները պատրաստել են հնձիչ մեքենայի, եգիպտացորեն և կարտոֆիլ հավաքող կոմբայնների մոդելներ, օգնել Ոսկեվազ գյուղի կոլտնտեսությանը՝ եգիպտացորենի առատ բերք հավաքելու գործում։

Դուք կարծում եք, թե միայն պատանի տեխնիկնե՞րն են հիանալի գործեր կատարել։ Հապա պատանի բնասերնե՞րը... Նրանց գործերը նույնպես հետաքրքրական են։ Դուք, իհարկե, շատ եք լսել հեքիաթներ ոսկե ձկնիկի մասին, բայց ոսկե ձկնիկ երբեք չեք տեսել։ Հապա գնացեք ցուցահանդես, և ակվարիումի մեջ դուք կտեսնեք բազմաթիվ ոսկե ձկնիկներ։ Դուք կտեսնեք նաև մրգերի այնպիսի տեսակներ, որոնց մասին լսել եք միայն հեքիաթներում։ Ահա և «Եղբայրության այգին»։ Ցուցահանդեսում դրված է այգու մակետը, իսկ իսկական այգին գտնվում է Վլադիմիր քաղաքում։ Այս այգին ունի տասնվեց բաժին, որոնք մեր Հայրենիքի տասնվեց ռեսպուբլիկաների խորհրդանշաններն են։ Բազմաթիվ առվակներ ձորակի լանջերով վազում են ցած և միանում մի ընդարձակ լճակի մեջ։ Այս հրաշալի այգում աճում են հարյուրավոր պտղատու ծառեր, որ տնկել են Վլադիմիր քաղաքի պատանի բնասերները։ Եթե փոքրիկ մակետի վրա այգին այսքան գեղեցիկ ու սքանչելի է, հապա ինչպիսին կլինի իրականում։



Պատանի բնասերների պավիլիոնը։

Այսքա՞նը միայն. ոչ, պատմելու շատ բան կա դեռ... Օրինակ՝ ես չասացի, որ Տուլա քաղաքի Սուվորովյան ռազմական ուսումնարանի պատանի բնասերներ Գեննադի Ժիգաևը և Անատոլի Անտոնովը աճեցրել են պամիդոր և ամեն մի թփից ստացել յոթ կիլոգրամ բերք։ Տաջիկստանի Օրջոնիկիձեի շրջանի Կրուպսկայայի անվան դպրոցի սաները անցյալ տարի դպրոցամերձ հողամասում ամեն մի հեկտարից ստացել են հիսունչորս ցենտներ բամբակ և հարյուրերկու ցենտներ եգիպտացորենի սերմ ու կանաչ մասսա, իսկ Կոստրոմայի մարզի Շունգենսկի շրջանի յոթնամյա դպրոցի պատանի անասնապահները ստանձնել են կոլտնտեսության մատղաշների շեֆությունը։ Անցյալ տարի նրանք իրենց խնամած քսանհինգ հորթերից ամեն մեկի օրվա միջին աճը, նախատեսված 650-ի փոխարեն հասցրել են 900 գրամի։

Այնքան, այնքա՞ն բան կա, որ դժվար է բոլորի մասին մեկ առ մեկ պատմել։ Պետք է գնալ ցուցահանդես, որպեսզի հնարավոր լինի ամեն ինչ տեսնել, ամեն ինչ իմանալ։ Իսկ դրա համար հարկավոր է լավ աշխատել դպրոցամերձ հողամասում, լավ սովորել, ակտիվ մասնակցել արտադասարանական խմբակների աշխատանքներին և արժանանալ ցուցահանդեսի մասնակցի պատվավոր կոչմանը։

## ԱՇԽԱՏԱՍԵՐ ՄՐՋՅՈՒՆԸ

*Հ. ՍԵՎԱՆ*

Փոքրիկ մրջյունն՝ անհոգին
Ծանր մի հասկ շալակին,
Տեսեք ինչպես է գալիս,
Ծուռ ոտքերին զոռ տալիս...
— Թեկուզ գնամ ես ձեռից՝
Չեմ հեռանա իմ բեռից։

# ԵՐԱԶԱՆՔԻ ՃԱՆԱՊԱՐՀՈՎ

Վ. ՏԱԼՅԱՆ

Լուսանկարները՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

## 1

Մայիսյան երկինքն այնքան մաքուր էր այդ օրը, արևն այնքա՜ն պայծառ... Հեռու ներքևում խաղաղ ծփում էր կապույտ Սևանը։ Դպրոցի հողամասում մեղմ քամուց ծածանվում էին եգիպտացորենի թզաչափ տունկերը, հողաթմբերն էին գրկել ձմերուկի թփերն իրենց երկար թևերով։ Օդը լցված էր ծղրիդների միալար զնգոցով և մեղուների աշխատանքի երգով։

Կեսօր էր, երբ Աղմաղանի թիկունքից, բարձրացավ ամպի մի պատառ և սողաց դեպի արևը։ Շուտով թանձր ստվերն ընկավ գյուղի վրա։ Որոտը ցնցեց շրջակայքը և խուլ արձագանքով գնաց հեռացավ երկնակամարի խորքերը։ Հետևյալ րոպեին ասես հազարավոր չարաճճի տղաներ քարկոծեցին դպրոցի թիթեղածածկ տանիքը։

— Կարկո՛ւտ,— բացագանչեց ուսմասվար Անտոնյանը և գրիչը գցելով սեղանին, դուրս թռավ բակ։

Նա նայեց Մարտունու կողմը՝ պարզ էր. Սևանա լճի կոհակների վրա էլ վետվետում էին արևի շողերը։

— Տես է՜, մենակ մեր գյուղի վրա եկավ,— լսվեց պահակի ձայնը։

Շուտով նրանց շուրջն էին հավաքվել բարձր դասարանների քննությունը տվող մի խումբ աշակերտներ։

Կարկուտն սկսեց դադարել։ Մի քիչ էլ տեղաց անձրևախառն ու ամեն ինչ խաղաղվեց։

Նայում էին հավաքվածները հողամասին և շատ բան հիշում նրա երեք տարվա պատմությունից...

Առաջ դա սածիլանոց էր։ 1952 թվականին կոլտնտեսության վարչությունն այդ հողամասը հանձնեց դպրոցին։ Պատանի բնասերները շատ ուրախացան. բայց հարկավոր էր սածիլանոցը ուսումնա-փորձնական հողամաս դարձնել։ Իսկ դրա համար անհրաժեշտ էր լցնել ջերմոցների փոսերը, հեռացնել քարերի կույտերը, հողը հարթել, մշակել։ Հեշտ գործ չէր։ Սակայն ի՞նչ դժվարություն կարող էր վախեցնել երիտասարդի ավյունով լցված բնագիտության դասատու Լևոն Վարդանյանին, աշխատանքի բուռն հոսանքի մեջ նետվող պատանի բնասերներին։

Դրուժինայի խորհուրդը լսեց Վարդանյանի զեկուցումը և որոշեց անմիջապես սկսել հողամասի մշակումը։ Եվ բոլոր ջոկատները լծվեցին գործի։ Ամեն մի ջոկատ ստացավ իր հողակտորը և սկսեց պատրաստել ցանքի համար։

Տասնհինգ օր պայքարեցին պատանիները և հաղթեցին։ Քարերի կույտերն այնպես չքացան, որ կարծես չէին էլ եղել։ Մեքենատրակտորային կայանն էլ օգնեց. բուլդոզեր տվեց, տրակտոր ուղարկեց...

Այս տարի էլ ցանկապատ կառուցեցին։ Դրա պատճառով ուշացավ էլիտ տեսակի կարտոֆիլի ցանքը, կաղամբի և պոմիդորի սածիլումը...

Ուսմասվարի մտքերն ընդհատեցին դպրոցի հետևից լսվող ճիչերը։ Բոլորը նայեցին ձայների կողմը։

Շնչասպառ վազեց եկավ Ռայա Անտոնյանը։ Մազերը թրջված էին ու խռիվ, մոխրագույն աչքերի թարթիչներից կախված էին չգիտես անձրևի թե արցունքի կաթիլները։

— Ես... տանն էի... մեկ էլ իմացա որ...,— վրա տվեց նա.— դուրս թռա. հանդիպեցի Ռիդային, միասին վազեցինք։ Հետո պատահեցինք Ջոնիկին, Երազիկին ու Բերուժին...

Ռայան ետ նայեց։ Իրար հետևից հասան մյուսները։

— Ամբողջ մեր աշխատանքը կորավ,— ջղայնացավ Ջոնիկը։

— Ոնց որ իսկի ցանած չլինենք... ոչ մի բան չի երևում—տխուր ասաց Բերուժան Ասլանյանը և ատելությամբ նայեց հողամասի վրա փռված սպիտակ շերտին։

Ջոնիկը մտաբերեց, թե ինչքան լավ բերք աճեցրին անցյալ տարի։ Լավ աշխատանքի համար երրորդ կարգի մրցանակ ստացան...

«Մայակ» տեսակի պոմիդորը աճեցրին տորֆա-հումուսային թաղարներում, իսկ «Դոնսկոյ» տեսակը՝ սովորական ձևով։ Հետո փոխադարձ փոշոտում կատարեցին։ Շուտով փարթամ թփերից կախվեցին խոշոր, կարմիր և մսալից պոմիդորները։ Հողամաս այցելեց պրոֆեսոր Հր. Բատիկյանը և ասաց, որ իրենց փորձադաշտի պոմիդորներից պակաս չեն։ Գիտնականի խրախուսանքն ավելի եռանդի բերեց պատանի բնասերներին։

Անհաջողություններ էլ եղան, իհարկե։

Ջեմմա Անտոնյանի օղակը ցանեց ճակնդեղ, ցորեն և վարունգ։ Վարունգի որոշ բներում ժամանակին ծիլեր չերևացին։ Բնասերները դիմեցին դասատուի օգնությանը։ Պարզվեց, որ սերմերը փտել էին։ Ուսուցչի խորհրդով նրանք նորից ցանեցին և թաղարներով տեղափոխեցին հողամաս։ Արդյունքն հրաշալի էր։



Ստուգում են եգիպտացորենի կողրերի հասունությունը։

Հապա պատանի բնասերների շրջանային հավաքը…

Վերուշը Ջոնիկին հիշեցրեց, թե ինչպես հարյուրավոր պիոներներ կլանված լսում էին Լեոն Վարդանյանի զեկուցումը ծովի մակերևույթից երկու հազար մետր բարձրության վրա աճեցրած տասնյակ բույսերի մասին։

— Դե՛, ձեզ տեսնեմ,— այն ժամանակ ասաց դասատուն,— շատերն են պատրաստվում մեզանից անցնել, հա՞։

Իսկ հիմա այս զզվելի կարկուտը…

Մինչ այդ գյուղի երկու կողմից հոսող պղտոր ջրերն ավելի հորդացան և ահավոր վշշոցով հոսեցին դեպի հողամասը։ Այդ ժամանակ թնդաց դեպի հողամասն շտապող Վարդանյանի ձայնը.

— Ինչ եք գլուխներդ կորցրել… շուտ, բահերը բերեք…

Պատանիները վազեցին բահերը բերելու։ Մի վայրկյան անց բոլոր տղաներն ու աղջիկները լուռ աշխատում էին։ Պղտոր առուները գոշգոշալով շեղեցին իրենց ճանապարհը։ Հողամասը հեղեղումից փրկված էր։

Վարդանյանը շրջում էր մարգերի արանքներում, դիտում, շոշափում բույսերը, կանգ առնում ու մտածում։ Ապա նա կանչեց բնասերներից մի քանիսին և ասաց.

— Կաճեն, մի՛ վախեցեք, կաճեն։ Դեռ փոքր են. այնքան վնաս չի տվել։ Լավ խնամեցեք և բան չի լինի։

Գյուղատնտես Շուրա Անտոնյանն էլ եկավ տեսավ կարկտահարված հողամասը, նայեց այս տարի առաջին անգամ աճեցրած եգիպտացորենին և համոզված պնդեց, որ կաճի, կբարձրանա։ Ուսումնա-փորձնական հողամասերի մրցմանն էլ կարող են մասնակցել։

2

Անցան օրեր։ Պիոներները կրկնապատկված ջանքով խնամեցին իրենց կանաչ փոքրիկներին։ Միայն կաղամբի երկու թուփ հիվանդացան։ Անցյալ տարվա պես հուշատետրեր կազմեցին և ուշի-ուշով հետևում էին բույսերի աճմանը։ Այդպես արեցին և՛ օղակավար Ռիտա Գասպարյանը, և՛ Գեղեցիկ Սարգսյանը, և՛ Ջոնիկ Վարդանյանը…

Պատանի բնասերների անխոնջ աշխատանքի պտուղները շուտով երևացին։ Թերահավատները լռել էին։ Նրանք տեսնում էին ցանկապատից բարձր եգիպտացորենը, մեծագլուխ կաղամբները, ձմերուկի լայնորեն փռված տերևները, փթթանոց դդումի հուժկու ցողունները և գլուխները զարմանքով տարուբերում։ Իսկ պատանի բնասերների խմբակի ոչ մի օղակ մյուսից ետ չէր մնում։

Ռիտա Գասպարյանի օղակը մրցում էր այն օղակի հետ, որի անդամն էր Ռայան։

Մի օր Ռայան դիմեց կարտոֆիլի բուկլիցով զբաղված Ռիտային ու ասաց.

—Մեր եգիպտացորենը տես ուր է հասել, իսկ ձեր կարտոֆիլը դեռ գետնին կպած է։

Ռիտան գլուխը բարձրացրեց, սև աչքերով շեշտակի նայեց ընկերուհուն և պատասխանեց.

— Չես հասկանում. մերի հարստությունը հողի տակն է՝ հետո կերևա, իսկ ձերը բոյ է քշել միայն։

Լեոն Վարդանյանը գորովանքով է խոսում իր սաների մասին։ Լինի դա բնագիտական կաբինետում, հողամասում, թե խմբակի պարապմունքներին, կարմիր վզկապավոր բնագետներն այդ անդադրում մարդու լավագույն օգնականներն են։ Կաբինետում պահպանվում են երեխաների կազմած սերմերի և ամբողջ բույսերի կոլեկցիաները, որոնք հիանալի ուսումնական նյութեր են։

Դրանք օգնում են աշակերտներին ավելի լավ յուրացնելու բուսաբանությունը։

Շատ բան կարելի է պատմել առանձին բնասերների, թեկուզ Բերուժանի մասին։ Երկու տարի է, ինչ պատանի բնասերների խմբակի անդամ է նա։

Ինքը Բերուժանը գիտնականի լրջությամբ է պատմում կատարածի մասին։

— Հողը փորեցինք 35—40 սանտիմետր խորությամբ, հետո մարգեր ու թմբեր սարքեցինք։ Բայց առաջին օրը չցանեցինք, որպեսզի հողը նստի և թմբերն ամրանան...

Ապա նրանք մի լարը կապում էին աջից ձախ, իսկ մյուսը վերևից ներքև։ Ստացվում էր քառակուսի, որի մեջտեղի բնում եգիպտացորենի 3—4 հատիկ ցանում։

— Ինչո՞ւ այդքան։

— Մեկը կամ երկուսը թույլ էին լինում. դրանք հանում էինք՝ մնում էին ուժեղները։

Լավ է աշխատել Գասպարյանի օղակն այս տարի և հատկապես Վանիկ Բղդոյանը։

— Միշտ ժամանակին է գալիս. ժամանակից էլ շուտ... Շատ արագ էլ աշխատում է։ Վեցերորդ դասարանցի է, բայց մեզանից առաջ է ընկնում,— ասում է իններորդ դասարանցի Ռիգան։

Ջոնիկ Վարդանյանի օղակն էլ առաջավոր էր։ Չէ՞ որ հաղթել էր պետք։

— Մեր դպրոցի հողամասն է չէ՞. էլ ո՞նց լավ չաշխատեմ։ Ես որ չաշխատեմ, մյուսներն էլ կծուլանան,— ասում է Ջոնիկը։

## 3

Վաղ առավոտ է։ Ծխնելույզներից երկինք է բարձրանում կապտավուն ծուխը։ Կոլտնտեսականները պատրաստվում են դաշտ գնալու։ Դաշտ են գնում նաև պիոներները։ Դպրոցամերձ հողամասում այսօր գործ չկա, իսկ հարազատ կոլտնտեսությանը պետք է օգնել։

Կոլտնտեսության և դպրոցի կապն ուժեղ է։ Ամեն ինչով օգնում են մեկը մյուսին։ Կոլտնտեսությունը միշտ էլ տալիս է պարարտանյութ, քաշող ուժ, տրակտոր։

Լավ է կապը նաև շրջանի մյուս գյուղերի հետ։ Օրինակ՝ Մարտունու դպրոցից եկել են, տեսել և իրենց մոտ էլ լավ փորձադաշտ ստեղծել։ Վարունգի, ձմերուկի և նոր տեսակի դդումի սերմեր են ուղարկել Վարդենիկ գյուղը։

Նույնիսկ Ծովինարից եկել են և հիացել Ջոլաքարի ձմերուկով։

— Մեզ մոտ էլ կաճեցնենք,— ասել են նրանք,— ճիշտ է, մենք լավ խնձորներ ունենք, բայց ձմերուկ ու սեխ չենք փորձել։

Բասարգեչարից անգամ եկել են ձմերուկ տարել, որ դրա սերմերից լավ ձմերուկ աճեցնեն...

Հուլիսյան մի մեղմ ու զով երեկոյան պիոներական դրուժինայի խորհուրդը հավաքվել էր նիստի։ Այդտեղ էր նաև Լևոն Վարդանյանը։ Քննարկվում էր մի շատ կարևոր հարց. թե ով պետք է գնա Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդես։ Տրված էր երկու տեղ։ Այդ էր պատճառը, որ Վարդանյանը լարված մտածում էր. «Ո՞ւմ ուղարկենք, ո՞վ է լավը»։ Եվ նա անքթիթ նայում էր հավաքվածներին, որոնց վեճը քանի գնում բորբոքվում էր։

Խոսքը տվեցին Լևոն Վարդանյանին։ Նա նորից նեղն ընկավ. «Ո՞ւմ ուղարկել»։

Վերջապես որոշեցին ուղարկել Ջոնիկ Վարդանյանին և Բերուժան Ասլանյանին։ Բայց Լևոնը կուզենար, որ ամբողջ խմբակը գնար, կամ թեկուզ մի քանի պիոներ։

Այդպես անբավական էլ նա գնաց տուն։



— Ի՜նչ ծանր դդում է...

Քայլում է նա և տարվում հողամասի հեռանկարներով։ Մյուս գարնանը ցանկապատի երկայնքով դեկորատիվ ծառեր պետք է տնկել... Եվ ինչո՞ւ միայն դեկորատիվ. պտղատու ծառեր էլ... խնձորի, տանձի, բալի, կեռասի... «Ծիրանի էլ փորձենք, հը՞», անցնում է նրա մտքով։ Եվ նա ցածրաձայն ծիծաղում է։ Չգիտես, համարձակ երազանքի, թե՞ անհավատների վրա։

— Ա՜յ թե նորություն կլինի, Ջոնիկ,— ասում է նա իր հետ լուռ քայլող որդուն:

— Պտղատու ծառերի առանձին հատված կունենանք, չէ՞,— հարցնում է տղան:

— Տեսնենք,— գործնական տոնով պատասխանում է հայրը:

Սակայն երազանքը սահման չունի: Կաճեցնեն նաև կարտոֆիլի, լոբու, ձմերուկի նորանոր տեսակներ:

Կոլտնտեսության փորձադաշտում աճեցնում են դդմիկներ: «Մեզ մոտ էլ շատ լավ կլինի», դարձյալ թռչում է Լևոն Վարդանյանի միտքը դեպի հեռուն:

Մյուս օրը ամբողջ գյուղը ճանապարհ էր դնում Ջոնիկին և Բերուժանին: Բայց ամռան կեսին ո՞րտեղից այդքան երեխա դպրոցում. զարմանալի է...

Լևոն Վարդանյանը չի կարողանում պահել իր հուզմունքը: Ավտոյի ոտնատեղին կանգնած նա ասում է.

— Ոչինչ, սիրելինե՛րս, ոչի՜նչ. մյուս տարի էլ ուրիշները կգնան... Միայն թե թափը չթուլացնենք, աշխատենք այնպես, ինչպես պետք է...

Այո, աշխատեն ինչպես պետք է: Եվ կաշխատեն նրանք, բարձրաբերձ Զոլաքարի պատանի բնակիչները, չոր ու քարքարոտ հողերը ծաղկուն այգիներ դարձնող պիոներները:

## ԱՌԱՋԻՆ ՊՏՈՒՂՆԵՐԸ

Վ. ԿԱՐԵՆՑ

Մրգաքաղ է այգիներում,
Այգիներում՝ աշուն.
Քամին ծառերն է օրօրում
Տերևներն են խշշում:
Նա դպրոցից տուն է գալիս,
Ուրախ ժպիտ դեմքին,
Զամբյուղն առնում վազ է տալիս
Իրենց մոտիկ այգին:
Եվ մոտենում է նա տնկած
Իր խնձորի ծառին,
Որ կախել է ճյուղերը ցած՝
Պտուղների բեռից...
Պատահե՞լ է քեզ հետ արդյոք
Այդ պահը բերկրալի,
Երբ քո ծառը իր առաջին
Պտուղներն է տալիս:
Փոքրիկ ծառը իր խնամած
Արդեն տվել է բերք.
Խնձորները քաղում է նա
Ու բաժանում մեկ-մեկ...
Պտուղները իր վաստակի
Տեսնես ի՞նչ համ ունեն...
Նա բաժանում է ամենքին
Եվ մոռանում իրեն:
Մրգաքաղ է այգիներում,
Այգիներում՝ աշուն,
Քամին ծառերն է օրօրում,
Տերևներն են խշշում:




Արևն իր ոսկեգույն լույսը գցեց վաղորդյան արծաթազօծ ցողով թաթախված ծաղիկների ու կանաչի վրա:

Սկսվում է արոտավայրում գտնվող անասնապահների առօրյան: Անասնապահները գառների ու ոչխարների հոտերը, կովերի նախիրները արոտի են դուրս բերում Գեղամա լեռների կանաչազարդ լանջերը, իսկ մի մասն էլ ոչխարներին է կթում, արգելանոցներ կառուցում, ջրավազաններ պատրաստում:

Պիոներներից Ասկոն, Աթոն, Թելլին, Ուսուբը, Բասեն և Քյարամը վաղ առավոտվանից դուրս էին եկել ծաղիկներ քաղելու և բավականաչափ հեռացել էին իրենց բինաներից: Բարձրանալով դիմացի բլրակը, նրանք տեսնում էին իրենց վրանները և կոլտնտեսության ֆերման:

— Քյարա՛մ, Զալխե՛, Աթո՛, տեսե՛ք՝ մեր ծնողներն այնտեղ ինչ-որ բան են կառուցում,— ասաց փոքրիկ Բասեն։— Գնանք օգնելու։

— Գնա՛նք, գնա՛նք,— գոչեցին բոլորը։

Մի քիչ հետո նրանք հասան ջրավազանի կառուցման վայրը։

Պիոներներից ամենամեծը՝ Քյարամը աշխատանքի բաժանում կատարեց։ Մի քանիսին հանձնարարեց կտրտված ճիմերը կրել, իսկ մյուսներին՝ քարեր հավաքել։

Մի քանի ժամից հետո Քյարամը, Ասկոն, Ուսուբը և Բասեն ջրավազանի մոտ քար թափեցին։ Թելլին և Աթոն էլ ճիմ բերեցին։ Նրանք քար էին տալիս, իսկ Բայլոզ ապերը պատերն էր շարում։

Հինգ օրում ավարտվեց ջրավազանի կառուցումը։ Այդտեղ հավաքվելու էր սարից հոսող գլգլան ջուրը՝ ֆերմայի անասուններին ջրելու համար։

Ոչխարների ճաշվա կիթն էր։ Արգելանոցի կենտրոնում դրված քարի վրա նստած Քյարամը երկու թևով գրկել էր ոչխարի գլուխը, որ կթեն, իսկ Բասեն ու Աթոն մյուս ոչխարները մոտեցնում էին։ Հանկարծ լսվեց Բայլոզ ապոր ձայնը։

— Կարկուտ, կարկո՜ւտ...

— Ի՞նչ կարկուտ, ո՞ւր է կարկուտը,— հարցրեց Քյարամը։

— Ա՛յ, էն սև ամպերը կարկուտի ամպեր են,— ասաց Բայլոզ ապերը։

— Մատղաշ գառներն ու հորթերը ծածկի տակ հասցրեք,— այս ու այն կողմից գոչում էին զոոտեխնիկը և ֆերմայի վարիչը։

Ասկոն, Աթոն, Քյարամը, Թելլին, Բասեն և Ուսուբը իրենց ծնողների հետ վազեցին դիմացի բլրի հետևը՝ գառներին և հորթերին տուն քշելու։ Երեք հարյուր մետր էր մնացել, որ նրանք հասնեն բինաներին, երբ տեղատարափ կարկուտ սկսվեց։

— Փրկե՛լ մատղաշ գառներին ու հորթերին,— լսվում էր Բայլոզ ապոր ձայնը։

Պիոներները ամենամատղաշ գառներին ու հորթերին գրկելով տանում, տեղավորում էին ծածկերի տակ։

Կարկուտը դադարեց։ Գետինը սպիտակեց։ Ամպերն հեռացան։ Արևն արձակեց իր կենսատու շողերը։ Անասնապահները ստուգում էին գառների և հորթերի փարախները. արդյոք մատղաշների կորուստ չի՞ եղել։

— Ոչ մի կորո՛ւստ. շնորհիվ մեր փոքրիկ օգնականները,— ժպտալով ասում էր ֆերմայի վարիչ Գերասիմ Աբրահամյանը։

Պիոներները չվախեցան կարկուտից և փրկեցին երեսունչորս գառ և տասնհինգ մատղաշ հորթ։

Ամռան մի գեղեցիկ օր պետք է կատարեին Մեծամորի և Ներքին Խաթունարխի ոչխարների ամառային խուզը։ Դրա համար բերել էին էջմիածնի մեքենա-տրակտորային կայանի խուզիչ ագրեգատը։

Եվ ահա ագրեգատի պետին են մոտենում Քյարամը, Ասկոն, Բասեն և խնդրում են գործ տալ իրենց։

Հանձնարարություն ստանալուց հետո նրանք գործի են անցնում։ Ոմանք ագրեգատի մոտից հավաքում են քարերը, Բասեն ու Թելլին էլ ավլում են գետինը, իսկ Քյարամը, Ասկոն և Աթոն փորում են խուզի սեղանների ամրացման հենարանների տեղերը, մոտ են բերում տախտակները, փռում են էլեկտրահաղորդալարերը։ Ներքին Խաթունարխի պիոներներ Աֆոն և Սուրիկը քարե պարիսպ են շարում, որ խուզված բուրդը քամին չտանի, իսկ Օզմանն ու Փաշոն, ագրեգատի պետ Թելմանին են մոտեցնում փոքրիկ էլեկտրաշարժիչները, խուզող մկրատները։

Մի քանի ժամից հետո խուզման կետը պատրաստ էր։

— Դե՜հ, տղե՛րք, մեր և Ներքին Խաթունարխի կոլտնտեսությունների ոչխարները պետք է շուտ խուզեն, որ ագրեգատն ուրիշ ֆերմա տանեն,— ասում էր աշխատասեր Քյարամը։

Բասեն, Թելլին և Ուսուբը բուրդ էին հավաքում, իսկ Քյարամը, Ասկոն և Աթոն ոչխարներ էին բերում։ Ոչխարը խուզի սեղանին դնելուց հետո, նրանք թելով կապում էին ոտքերը, որպեսզի կարողանան հանգիստ խուզել։

Նրանց օգնելու եկան նաև Աֆոն, Սուրիկը և Օզմանը։ Նրանք պարկերն էին լցնում կուտակված բուրդը։ Մեծահասակներն էլ կարում էին պարկերի բերանները։

Պիոներներն իրենց ծնողներին օգնելուց բացի, չէին մոռանում գրել, կարդալ, նկարել։ Նրանք միասին գնում էին Գեղամա լեռների գեղատեսիլ լանջերը, որտեղ ամեն օր շատ ու շատ նոր բաներ էին տեսնում ու սովորում։

Ամռանը նրանք այսպես էին օգնում իրենց կոլտնտեսությանը, իսկ հիմա նորից լծվել են ուսմանը։

ՄԱՄԵ ԳՈՒԼՈՅԱՆ

(Զոռոնխնիկ)

# ՄԵՐԺՎԱԾ ԱՌԱՋԱՐԿՈՒԹՅՈՒՆԸ

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Նկ. Հ. ՍԱՆԱՍԱՐՅԱՆԻ

*Աշխատանքից հետո Կամոն ուզում էր գնալ տեխնիկայի ուսուցման խմբակի պարապմունքի, երբ նրան հայտնեցին, որ իր ընկերներից մեկը գործարանի մուտքի մոտ սպասում է իրեն։ «Ո՞վ կլինի»,— մտածեց Կամոն և շտապեց տեսնել։*

*— Վա՛հ, դո՞ւ ես, Սուրե՛ն, ի՞նչ կա,— ուրախ դիմավորեց Կամոն իրենց հարևանի տղային, որի հետ նա մտերիմ ընկեր էր։*

*— Կինոյի տոմս եմ վերցրել, գնանք,— ասաց Սուրենը։*

*Կամոն շատ ուրախացավ, որ իր ընկերը կինո է հրավիրում իրեն, բայց…*

*— Չէ՛, չեմ կարող, Սուրե՛ն, պարապմունքի եմ գնալու։*

*— Դե լա՛վ, մի պարապմունքի էլ մի գնա,— պնդեց Սուրենը,— չես տուժի։*

*«Մի պարապմունքն ի՞նչ է որ,— մտածեց Կամոն,— վաղը կիմանամ, թե ինչ են անցել»։*

*Այդպիսի մի դեպք էլ պատահեց մի քանի շաբաթ հետո։ Կամոյի հաստոցը կանգնեցրին վերանորոգելու համար։ Այդ օրը աշխատանքից հետո դարձյալ խմբակի պարապմունք կար։ «Ո՞վ է երեք ժամ սպասողը. կգնամ տուն» վճռեց Կամոն։ Այդ պարապմունքին ինժեները առաջին անգամ բացատրեց, թե ինչպես պետք է հաշվել հաստոցի հզորությունը։ Ճիշտ է, այդ թեմայի հաջորդ պարապմունքներին անդրադարձան, բայց Կամոն միշտ դժվարանում էր։ Այդպես է. մի քանի սկիզբը որ չես լսում, վերջը դժվար է լինում ըմբռնել։*

*Հետագայում, երբ պետք էր լինում գծագիր կազմել կամ հաշվել հաստոցի հզորությունը, Կամոն միշտ նեղն էր ընկնում։*



*Կամո Բարսեղյանը մեխանիկական ցեխի ամենաերիտասարդ խառատն էր։ Այդ ցեխում նորարարներ շատ կային։ Նրանք հաճախ էին զրույցներ ունենում Կամոյի հետ, մտքեր փոխանակում։*

*— Չես հարցնում, թե այս ինչի՞ց է գործս այսպես արագ առաջ գնում,— մի անգամ Կամոյին դիմեց Ահարոնը։ Ապա նա սեղմեց կոճակը և գայլիկոնը մոտեցրեց հաստոցին ամրացրած մետաղյա ձողին։ Մի փոքր անց նա վերցրեց պատրաստի պտուտակը։*

*— Ինչքա՞ն տևեց, երեք րոպե, չէ՞. իսկ առաջ տևում էր հինգ րոպե։ Իմ առաջարկությամբ է կատարվել այս փոփոխությունը։*

*— Քո՞ առաջարկությամբ…*

*— Այո, բայց սա ինչ է որ, երևում է՝ դու չես լսել Հայկազ Առաքելյանի առաջարկության մասին։ Նա այնպես է ձևափոխել ամեն ինչ, որ մխոցի շարժաձողը երեքի փոխարեն մշակվում է մեկ հաստոցի վրա։ Ո՞րտեղից է ծագել նրա գլխում այդ միտքը։ Բարդ է, չէ՞։*

*Ահարոնը մի պահ լռեց, ապա ավելացրեց.*

*— Իսկ գիտե՞ս, որ որոշվել է նրա պատրաստած նոր հարմարանքը կոչել հեղինակի՝ Հայկազի անունով։*

*Կամոն չհավատաց։*

*— Մի՞թե. այդ հո իսկական գյուտարարի բան է։*

*— Դե նա էլ գյուտարար է, էլի։ Մեր ցեխը այժմ մոտ երկու անգամ ավելի շատ շարժաձող կմշակի։*

*Հնարամիտ բանվորների կոլեկտիվը համակեց նաև Կամոյին։ Գնալով նա դառնում էր ավելի լրջմիտ, ծանրախոհ։ Լինում էին օրեր, որ նա աշխատանքից հետո մնում էր հաստոցի մոտ, ինչ-որ փորձեր էր կատարում։*

*Նրա միտքը զբաղված էր։ Եվ մի օր Կամոն ընկերներին խոստովանեց, որ ինքը մտածում է իր հաստոցի վրա ամրացնել բազմակտրիչ մի հարմարանք, որպեսզի հնարավոր լինի մասերից մեկի մշակման բոլոր չորս գործողությունները կատարել միաժամանակ։*

*— Լավ մտահղացում է,— ասաց Լևոնը։*

*— Այո, կարելի է, և շատ լավ էլ դուրս կգա,— ավելացրեց Սամվելը։*

*Մտահղացումն ընկերների շրջանում հավանություն գտավ։ Նրանք Կամոյին խորհուրդ տվեցին այդ մասին գրել գործարանի գյուտարարության բյուրոյին։ Եվ մի երկու օր հետո բյուրոյի պատասխանատու ինժեները բացելով թղթապանակը կարդաց մեխանիկական ցեխի խառատ Կամո Բարսեղյանի առաջարկությունը։ Նա շուռ տվեց դիմումը, քրքրեց թղթերը, բայց իզուր, գծագիր չգտավ։ «Այս ինչ նոր կարգ է,— մտածեց նա.— ո՞րտեղ են գծագրերը, հաշվումները»։ Այդ մասին նա զեկուցեց գլխավոր ինժեներին։*

*— Ոչինչ,— ասաց գլխավոր ինժեները,— այն.*

ինչ օգտակար է գործին, պետք չէ հետաձգել, մտցրեք բյուրոյի քննարկմանը. առաջարկությունը կընդունենք, իսկ հեղինակին կհասկացնենք, որ այդպես չէ կարգը։

Բյուրոյի նիստում Կամո Բարսեղյանը գրեթե նույնությամբ կրկնեց այն, ինչ գրված էր դիմումի մեջ։ Նիստի հավաքվածները միաձայն հավանություն տվեցին։ Մտահղացումը ճիշտ էր։ Ինժեներներից մեկը ցանկացավ իմանալ, թե ինչպիսի տեսք է ունենալու նախատեսվող հարմարանքը։

— Խնդրեմ ցույց տվեք գրատախտակի վրա,— դիմեց նա Կամոյին։

Կամոն կավիճով ինչ-որ գծումներ կատարեց, բայց դա ո՛չ նկար էր, ո՛չ գծագիր։ Պահանջեցին, որ նա նշի չափսերը, կտրիչների անկյունները, դետալի դիրքը մշակման ժամանակ։ Գլխավոր ինժեները Կամոյին հարց տվեց.

— Հաշվե՞լ եք ձեր հաստոցի հզորությունը, հնարավո՞ր է արդյոք նրա վրա այդպիսի մեծ ուժ պահանջող հարմարանք դնել։

Կամոն անակնկալի եկավ։

Այդ հարցերը բյուրոյի անդամներին միանգամայն պարզ էին. նրանք ուղղակի Կամոյի գիտելիքներն էին ստուգում։

Տեխնիկայի ուսուցման խմբակի ղեկավար ինժեները գաղտնի ինչ-որ նշան արեց գլխավոր ինժեներին, որ կարծես թե նշանակում էր «երեխաները մի սրան հասկացնենք, թե ինչ է նշանակում բացակայել պարապմունքներից» և դառնալով Կամոյին անտարբերորեն ասաց.

— Ցավալի, Կամո՛, առաջարկությունդ սխալ է, չենք կարող ընդունել։

Ինժեների միտքը հասկացան բոլորը։ Կամոն չհասկացավ, թե ինչ է կատարվում։ Մի փոքր առաջ ասում էին լավ է, նույնիսկ գովում էին, իսկ հիմա՞...

Միջանցքում անհամբեր սպասում էին ընկերները։

— Ի՞նչ եղավ, Կամո՛, ընդունեցի՞ն,— վրա տվեցին նրանք։

— Չէ, մերժեցին, ասում են՝ սխալ է։

Տղաները զարմացան։

— Ինչպե՞ս թե սխալ է. իսկ դու պնդեիր, ապացուցեիր, որ ճիշտ է։

Սակայն Կամոյին պարզ չեղավ, թե ինչպես կարելի է պնդել, ապացուցել առաջարկությունը, երբ ինժեներներն ասում են, որ սխալ է։



Անցավ մի քանի շաբաթ։ Կամոյին շտապ կանչեցին գործիքային ցեխ։ Այնտեղ մի խումբ բանվորներ հավաքված լսում էին գլխավոր ինժեների բացատրությունը՝ հաստոցներից մեկի վրա ամրացրած նոր հարմարանքի մասին։

— Ահա և հեղինակը,— ասաց գլխավոր ինժեները՝ մատնացույց անելով Կամոյին, երբ նա մտավ ցեխ։ Կամոն առաջ եկավ։

— Խնդրեմ, ընկե՛ր Բարսեղյան,— ասաց գլխավոր ինժեները հանդիսավոր տոնով,— կարծեմ սա է քո առաջարկությունը, շնորհավորում եմ, փորձարկման արդյունքները դրական են։

Զարմանքից Կամոն խոսք չգտավ ասելու։ Նրա համար այժմ ամեն ինչ պարզ դարձավ։ «Ա՛յ, թե ինձ դաս տվին, հա՞» մտածեց նա։



Այդ դեպքից հետո նա սկսեց կանոնավոր կերպով հաճախել տեխնիկայի ուսուցման խմբակի պարապմունքներին։

Վերջերս Կամոյենց գործարանն էքսկուրսիայի եկան շեֆ դպրոցի մի խումբ աշակերտներ։ Բացատրող վարպետը կոլեկտիվի բազմաթիվ այլ նորարարությունների հետ մեկտեղ ցույց տվեց նաև Կամո Բարսեղյանի առաջարկությամբ պատրաստված հարմարանքը։ Աշակերտները խնդրեցին իրենց տանել հեղինակի մոտ։ Զրույցի ժամանակ աշակերտները խնդրեցին, որ Կամոն պատմի իր առաջարկության մասին։

Կամոն անհարմար դրության մեջ ընկավ։ Նա չգիտեր ինչից սկսել։

— Իմ այդ առաջարկությունը մերժել են,— ինքնաբերաբար դուրս թռավ Կամոյի բերանից։ Աշակերտները զարմանքով իրար երես նայեցին։

— Ինչպե՞ս թե, մի՞թե դա ձեր առաջարկությունը չէ։

*Կամոն ստիպված էր պատմել իր առաջարկությունը «մերժելու» ողջ պատմությունը։ Այդ ժամանակ աշակերտներին պարզ դարձավ, թե ինչու անվանի խառատը համոզված կերպով ասաց իրենց.*

*— Լավ սովորեք մաթեմատիկան, գծագրությունը։ Առանց մաթեմատիկայի և գծագրության դժվար է տեխնիկայում նորություն մտցնել և դառնալ ոչ միայն լավ ինժեներ, այլև լավ խառատ։*

# ԿՈՄԻՏԱՍ

**(1869—1935)**



Հանճարեղ Կոմիտասի անունը հայ ժողովրդի ամենանվիրական անուններից է։ Կոմիտասն էր, որ հիմք դրեց հայ պրոֆեսիոնալ երաժշտական արվեստին, նշելով նրա զարգացման հետագա ուղիները։ Նա ցույց տվեց հայ երաժշտության ինքնուրույն տեղը համաշխարհային երաժշտական կուլտուրայի պատմության մեջ...

Կոմիտասը շրջում էր գյուղից-գյուղ, ծանոթանում հայ գյուղացու կյանքին ու աշխատանքին, լսում նրանց երգերը, գրի առնում, հավաքում դրանք, ապա մշակում էր, վերստեղծում, հաճախ էլ վերածում խմբերգերի։ Նա իր կյանքի ընթացքում հավաքել է մոտ չորս հազար ժողովրդական երգ։ Նրա «Գարուն ա», «Կաքավիկ», «Չինար ես», «Սարերի վրով գնաց», «Շողեր ջան» և բազմաթիվ այլ մեներգներն ու խմբերգերը հայ երաժշտության ամենաթանկագին նմուշներն են։

Կոմիտասն անհման երգիչ էր և որպես երգիչ թողել է այնպիսի պատգամներ, որ բոլոր երգիչների համար շատ ուսանելի են։ Նա միևնույն ժամանակ հրաշալի խմբավար էր և հմուտ մանկավարժ։ Նա կազմակերպում էր երգեցիկ խմբեր, գրում երաժշտական դասագրքեր, դասավանդում երաժշտություն, սիրել տալիս հայ երգը։

Կոմիտասը խոշոր գիտնական էր։ Հայ երաժշտության մասին գրած նրա գիտական աշխատությունները անգնահատելի արժեք են ներկայացնում։ Թիֆլիսում, Կոստանդնուպոլսում, Փարիզում, Բեռլինում, Ժնևում, Կահիրեում և շատ այլ քաղաքներում նա կարդում էր դասախոսություններ հայ երաժշտության մասին և հիացմունք պատճառում բոլորին։ Բայց ծանր էր ժողովրդական կոմպոզիտորի կյանքի ուղին և ողբերգական նրա վախճանը։

Իր գիտակցական կյանքի մեծ մասը նա ապրել է Էջմիածնում, ապրել և աշխատել. իսկ վերջին հինգ տարին (1910—1915 թվական) Կոստանդնուպոլսում։ Հենց այդտեղ եղած ժամանակ է, որ սկսվում է առաջին համաշխարհային պատերազմը, հայ ժողովրդի կոտորածը։ Կոմիտասն էլ շատ ու շատ հայերի հետ ենթարկվում է դաժան տանջանքների, տեսնում իր ժողովրդի կրած տառապանքները։ Նա չէր կարող սառնասիրտ լինել իր ժողովրդի բնաջնջման պահին։ Եվ նրա հոգեկան աշխարհը խանգարվում է։ Քսան տարի Փարիզի հոգեբուժական հիվանդանոցում տառապելուց հետո 1935 թվականի հոկտեմբերի քսանմեկին նա վախճանվեց։ Նրա աճյունը Սովետական Հայաստանի կառավարությունը տեղափոխեց Երևան և հանձնեց մայր հողին։

Ամեն մի դպրոցական պետք է լավ ճանաչի մեծ Կոմիտասին, ականջանքով լսի նրա երգերը, սիրի հայ երգը։ Դա ամենալավ դափնեպսակը կլինի այդ մեծ մարդու անմահ հուշարձանին։

*Ց. ԲՐՈՒՏՅԱՆ*
*(Արվեստագիտության թեկնածու)*

# ԱՍՏՂԱԴԻՏԱԿ

Աստղագիտության խմբակներին մեծ օգուտ կարող է տալ ինքնաշեն հասարակ աստղադիտակը, որ կարող է պատրաստել յուրաքանչյուր աշակերտ: Դրա համար անհրաժեշտ է ձեռք բերել ակնապակի մեկ մեծ ֆոկուսային հեռավորությամբ և մի ուրիշ ոսպնյակ 2 կամ 2,5 սմ. ֆոկուսային հեռավորությամբ: Առաջին




ոսպնյակը աստղադիտակի համար կծառայի որպես օբյեկտիվ, իսկ երկրորդը՝ օկուլյար:

Նախ պետք է պատրաստել աստղադիտակի խողովակը, որը բաղկացած է երկու մասից. երկարը օբյեկտիվի համար, իսկ կարճը՝ օկուլյարի:

Օբյեկտիվի խողովակը պատրաստելու համար վերցրեք 90 սմ. երկարությամբ, 6 սմ. լայնությամբ և 1 սմ. հաստությամբ երկու տախտակ: Դրանք անհրաժեշտ են խողովակի ներքևի ու վերևի պատերի համար: Կողքի պատերը պատրաստեցեք 90 սմ. երկարություն և 8 սմ. լայնություն ունեցող ֆաներայից: Հետո սոսնձի և մեխերի օգնությամբ դրանք միացրեք իրար ինչպես ցույց է տրված (գծագիր № 1): Օկուլյարի խողովակը պետք է պատրաստել նույն ձևով, բայց ավելի փոքր. երկարությունը պետք է լինի 30 սմ. (գծագիր № 2), իսկ արտաքին չափերը պետք է լինեն այնպես, որ առանց դժվարության մտնի օբյեկտիվի համար պատրաստված խողովակի մեջ: Նախքան մեխելը, տախտակների ու ֆաներաների այն երեսները, որոնք կազմելու են խողովակի ներքին մակերեսները, պետք է ներկել սև գույնով: Այնուհետև ամրացրեք օբյեկտիվի ապակին: Դրա համար անհրաժեշտ է հաստ ստվարաթղթից պատրաստել երեք հատ 4×5 սմ. չափի քառակուսիներ: Մեկի կենտրոնում բացել օբյեկտիվի ոսպնյակի չափով մի շրջանակ, իսկ մյուս երկուսի կենտրոնում բացել 22 մմ. տրամագծի շրջանակներ (գծագիր № 3): Դրանից հետո օբյեկտիվի ոսպնյակը դրեք առաջին քառակուսու անցքի մեջ և ապա այդ դրությամբ տեղավորեք վերջին երկու շրջանակների մեջ և ամրացրեք սոսնձով: Ոսպնյակները պետք է տեղավորել խողովակների մեջ: Դրա համար նպատակահարմար է պատրաստել ևս մեկ խողովակ, որի արտաքին չափերը հավասար լինեն օկուլյարի խողովակի ներքին չափերին (գծագիր № 4): Օբյեկտիվի ոսպնյակը իր շրջանակով ամրացրեք այդ խողովակի մեջ և վերջինս տեղավորեք օբյեկտիվի խողովակում:

Օկուլյարի ոսպնյակը խողովակի մեջ ամրացնելու համար, նրա տրամագծի մեծությամբ ստվարաթղթից սոսնձեցեք մեկ խողովակ և ոսպնյակը դրեք նրա մեջ: Խողովակի մի ծայրում փակցրեք ստվարաթուղթ, վերջինիս կենտրոնում բացելով 5 մմ. տրամագծի անցք (գծագիր № 5): Այդ խողովակը օկուլյարի կարճ խողովակի մեջ ամրացնելու համար հաստ ստվարաթղթից պատրաստեցեք երկու քառակուսի (գծագիր № 6), որոնցից մեկը պետք է կիպ մտնի օկուլյարի խողովակի ներսը. իսկ մյուսը՝ հավասար լինի նրա շրջանակի արտաքին չափերին:

Քառակուսի ստվարաթղթերի կենտրոններում բացեք կլոր անցքեր՝ օկուլյարի խողովակի արտաքին տրամագծի մեծությամբ և օկուլյարի խողովակը սոսնձի միջոցով ամրացրեք նրանց մեջ: Կարճ խողովակը հագցրեք երկար խողովակի մեջ: Աստղադիտակի խողովակը պատրաստ է:

Աստղադիտակի եռոտանին բաղկացած է իրանից (գծագիր № 7), երեք ոտքերից (գծագիր № 8) և պտտվող գլխիկից (գծագիր № 9), որին ամրացվում է աստղադիտակի խողովակը: Գլխիկը պատրաստեցեք ֆաներայի երկու կտորից, որոնք ամրացվում են երկու հատ 7×7 սմ. քառակուսի ձևով կտրված և 2 սմ. հաստություն ունեցող տախտակի կողերին: Քառակուսի տախտակների




կենտրոններում անցքեր բացեք, իսկ իրանի (պրիզմայի) վերին մասի կենտրոնում ամրացրեք մետաղյա ձող՝ անցքի տրամագծի չափով: Գլխիկը իրանին միացնելուց հետո, կարող է ազատ պտույտ գալ այդ ձողի շուրջը:

Եռոտանու իրանը պատրաստվում է մեկ կտոր փայտից. իրենից ներկայացնում է կանոնավոր եռանիստ պրիզմա, որի հիմքի եռանկյան կողմը հավասար է 5 սմ, իսկ պրիզմայի բարձրությունը 7 սմ.:

Եռոտանու ոտքերի համար փայ-

տից պատրաստեցեք 2 սմ.×1 սմ. լայնական կտրվածքի մակերեսով և 150 սմ. երկարությամբ ձողեր և նրանցից յուրաքանչյուրը մեկական մեխերով ամրացրեք իրանին այնպես, որ նրանք որոշ չափումով պտտվեն այդ մեխերի շուրջը։ Աստղադիտակի խողովակը տեղավորեք գլխիկի բշիկների մեջ և մեխերի օգնությամբ ամրացրեք գլխիկին։ Այդպիսի հոստանու վրա խողովակը կարող է կանգնել և ազատ կերպով շարժվել ամեն ուղղությամբ։

Այսպիսի աստղադիտակը առարկաները խոշորացնում է 50 անգամ։ Երբ նույն օկուլյարի դեպքում օբյեկտիվի ակնապակին վերցնեք 2 մետր ֆոկուսային հեռավորությամբ և օբյեկտիվի խողովակի երկարությունը մեծացնեք երկու անգամ (180 սմ.), իսկ մնացած բոլոր չափերը թողնեք նույնը, ապա այդպիսի աստղադիտակը առարկաները կմեծացնի հարյուր անգամ։ Այդպիսի աստղադիտակի օգնությամբ գիշերները կարելի է կատարել բազմաթիվ դիտումներ, ուսումնասիրել արեգակնային համակարգության մեջ մտնող մոլորակները և նրանց արբանյակները։

*Ա. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ*

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝ նկ. Հ. ՁԱՐԴԱՐՅԱՆԻ




*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲՍԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21. Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 13314։ Պատվեր 979։ Տիրաժ 5000։ Տպագրական $4^1/_2$ մամուլ։ Ստորագրված է տպագրության 8/X 1955 թ.։*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## ՎԻԿՏՈՐԻՆԱ

1. Ո՞ր գրողի ստեղծագործությունների գլուխ գործոցը լույս տեսավ նրա մահից տաս տարի հետո և ո՞րն է այդ գործը:

2. Խ. Աբովյանի ո՞ր գիրքն էր, որ լույս տեսավ հեղինակի կենդանության ժամանակ, բայց իսկույն արգելվեց և այրվեց հոգևորականության կողմից:

3. Ո՞ր գրողն է իր առաջին վեպը նվիրել Միքայել Նալբանդյանի հիշատակին:

4. Ծնվել է 1854 թվականին և մեռել հիսունչորս տարեկան հասակում: Ո՞վ է այդ գրողը:

5. Ո՞վ է գրել երգեր հայերեն, վրացերեն և ադրբեջաներեն:

6. Ո՞ւմ խոսքերն են.

Ինչ ազնիվ է աշխատանքը,
Առողջ ձեռքով, խաղաղ հոգով,
Ինչ թեթև է անցնում կյանքը,
Երբ սիրով, ուրախ երգով:

*Կազմեց՝ Գ. ՍՐՎԱՆՁՏՅԱՆ*

### Փորձիր բաժանել



Երկու ուղիղ գծով այս տարածությունը բաժանիր այնպես, որ գծերի հատումից առաջացած յուրաքանչյուր մասում մնա երկու ծառ:

### Ի՞նչ է գրված այստեղ



Դուք չկարծեք, թե սա հնագույն արձանագրության մի նմուշ է: Այստեղ գրված են բառեր, որ դուք հաճախ կարդում եք, լսում և ինքներդ եք արտասանում:

Կարդացեք այդ բառերը:

*Կազմեց՝ Մ. ՕԹԱՐՈՎ*

### Մոլորակներ

Փորձեցեք միմյանց տակ գրել մոլորակների անունները այնպես, որ կրկնակի գծեր ունեցող ուղղահայացում կարդաք արևին ամենամոտիկ մոլորակի անունը:

*Կազմեց՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ*



### ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

*Գլխին առած մի մեծ ծառ*
*Շրջում է դաշտ ու անտառ:*

*Փետուրները որքան շքեղ,*
*Տոտիկները այնքան տգեղ:*

*Ո՞ր թռչունն է ջրասույզ,*
*Ձուկ է որսում սուս ու փուս,*
*Ջրի մեջ է շարունակ,*
*Բայց ո՛չ բադ է, ոչ էլ սագ:*

Մ. ԿՈՐՅՈՒՆ

